# ՂԵՐՈՒԲՆԱ ԵԴԵՍԱՑԻ

ԿԱՄ

# ՔԱՐՈԶՈՒԹԻՒՆՔ ՍՐԲՈՑՆ ԹԱԴԷԻ

ԵՒ

# ԵՍԱՅԻ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԱՂՈՒԱՆԻՑ



ՏՊԵԱԼ

ՅԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՆ Ս. ՅԱԿՈԲԵԱՆՑ

ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

1868=ՌՅԺԷ

# ՂԵՐՈՒԲՆԱ ԵԴԵՍԱՑԻ

## ԴԱՐՁՈՒԹԻՒՆ ԱԶԳԱՑԻՆ



# ՂԵՐՈՒԲՆԱ ԵԴԵՍԱՑԻ

Թուղթ Աբգարու Թագաւորի Հայոց, եւ քարոզութիւնք սրբոյն Թադէի առաքելոյ։



Ի ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏՈՒԹԵԱՆ

Տ. Տ. ԳԷՈՐԳԱՅ

ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ, Վ՛ ՀԱՓԱՆ ՀԱՅՐԱՊԵՏԻ ԱՌԱՋՆՈՐԴԻ

ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ



ՀՐԱՄԱՆԱՒ

Տ. Տ. ԵՍԱՅԵԱՅ ՍՐԲԱԶԱՆ

ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՒ ՊԱՏՐԻԱՐՔԻ Ս. ԵՐՈՒՍԱՂԷՄԱՅ

ԵՒ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍՈՅ

Տ. Տ. ՊՕՂՈՍԻ ՍՐԲԱԶԱՆ

ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ



Ի ՏՊԱՐԱՆԻ

ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՅ Ս. ՅԱԿՈՎԲԵԱՆՑ

ԵՐՈՒՍԱՂԷՄ

1868—ՌՅԺԷ

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Ի ՀԱՅՍ պատմագրաց զերս յիշատակէ Մովսէս Խորենացի ՚ի պատմութեան իւրում, զատանի և Ղերուբնա որդի Ափշադարայ դպրի : Այս Ղերուբնա Ասորի գոլով ազգաւ՝ էր դիւանադպիր արքային Հայոց Աբգարու որպէս և հայր իւր. Սա գրեաց ասէ Խորենացի, զամենայն գործս որ ինչ յաւուրս Աբգարու և Սանատրկոյ (եղեն), և եդ ի դիւանին Եդեսիոյ (1) : Արդ յայտ իմն է եթէ և նա ինքն պատմագիրն մեր ծերունի ի նմանէ առեալ գրեաց զերկուց թագաւորացն մերոց յիշատակելոց զգործս, որոց արձանագրութիւնք պահեալ կային մինչեւ ցաւուրս իւր ի դիւանին Եդեսիոյ, այն է մինչեւ ցհինգերորդ դար :

Այլ գործոյ Ասորի պատմագրիս կորուսեալ համարի ցարդ բնագիրն Ասորական. և ոչ ոք այլ յազգայնին և յօտարազգի պատմաբանից յիշատակէ զանուն նորա, բաց ի միոյ միայնոյ Խորենացւոյն : Սակայն են ամք երեք յորմէ հետէ գտաւ ի գրքատան

(1) Խոր. Բ. 36.

սրբոյ Աթոռոյս ի միում ճառընտրի հատուած մի բանից՝ որոյ վերագիրն է. «Թուղթ Աբգարու Թագաւորին Եդեսիայ քաղաքի՝ որ թարգմանի Ասորի լեզու Ուռհայ, որդւոյ Մանովայ»։ Յորում պատմի հաւատալն Աբգարու ի Քրիստոս, թղթել նորա առ նա և ընդունել զպատասխանին, գալուստ Թադէի առաքելոյ յետ համբառնալոյ Փրկչին՝ առ Աբգար ի Հայս, քարոզութիւնք նորա, և այլն։ Իսկ ի վախճան բանիցն ասէ. «Պարուրնա (Պերուրնա) որդի Աբդոշադադայ դպիր թագաւորին գրեաց զամենայն ինչ զոր միանգամ իրք եղեն Ադդէի առաքելոյ ի սկզբանէ մինչեւ ի կատարած . . . և եդին ի տան յիշատակաց քաղաքին . . . »։

Արդ ի համեմատել մեր զայն գործ ընդ պատմութեան Մովսէսի քերթողահօր, գտանեմք՝ ըստ նորին իսկ վկայութեան, հանեալ 'ի նոյն գրոց՝ զոր ինչ պատմէ ըզթագաւորութենէն Աբգարու։ Իսկ զդուզնաքեայ տարբերութիւնս մարթ է ընծայել թարգմանչին։ Քանզի Մովսէս Խորենացի 'ի բուն իսկ Ասորի բնագրէն քաղեաց զայն որ ինչ պէտք իւրոյ պատմութեան էին. իսկ Հայերէն թարգմանութիւնն զորմէ է

բան մեր, յայլոց է արարեալ յաշակերտա-կացս նորին, և որպէս համանեալս եմ՝ Եզնը-կայ կամ Յովսեփայ Պաղնացւոյ, որք հրա-մանաւ սրբոյն Մեսրովպայ յետ գիւտի հայ-կական գրոց առաքեցան Եդեսիա Թարգ-մանութեան աղագաւ (1): Եւ զի նպատակ Թարգմանչացն մերոց ըստ պահանջելոյ դա-րուն այնորիկ՝ էր յառաջադիմութիւն քրիս-տոնական հաւատոց, և ոչ ուշ այլոց մա-սանց եդին ի Թարգմանութեան, բայց ե-թէ գրոց սրբոց և վարդապետական ուսմանց· վասն որոյ և որք զՂերուբնայ գիրսն կամե-ցան հեղուլ ի հայ, զքաղցրութիւնն և եթ ընտրեցին համեմել ի բան և ի գիր հայե-ցի. համառօտակի իմն անցեալ զպատմա-կան անցիցն Աբգարու, որ պատճառք եղեն նորա ճշմարիտ հաւատոցն և երթալոյն առ նա Ս. Թադէի: Եւ զի կարճութիւն ժամանա-կին զոր կացին անդ ի պարապումն Թարգ-մանութեան՝ Եզնիկ և Յովսէփ, որք շտա-պէին իմն դառնալ առ վարդապետսն իւ-րեանց և անտի ի Բիւզանդիա դիմել, ար-գել եղեն նոցա զամբողջ մատեանն հեղուլ ի մեզ:

Թարգմանութիւն սորին ի լեզու գաղ-

(1) Խորեն. Գ. 60:

դէսական լեալ առ ի Յովհաննէս Ռափա-
յել Էմինէ, որ և ածաւ ի լոյս տպագրու-
թեամբ յընթացս ամի անցելոյ. Շնորհիւ
աշխատասիրութեան Վիկտոր Լանկլուայ գաղ-
ղիացւոյ հայագիտի. և որպէս պատմէ սա
ինքն, բնագիր թարգմանութեանս գտեալ
է ի միում ճառընտրի եղելոյ ի կայսերական
գրատան Փարիզու։ Ի բաղդատել մեր ըզ-
սոյն ընդ մերում բնագրի, բաց ի դուզ-
նաքեայ զանազանութեանց գտաք ի նմին
զպատմութիւն գիւտի սրբոյ խաչին ի ձե-
ռըն Պատրոնիկեայ թագուհւոյն Կղօդիոյ
կայսեր։ Իսկ զի պարագայք պատմութեանս
այսորիկ ըստ մասին իմիք նման է պատմու-
թեան Հեղինեայ մօր մեծի Կոստանդիանոսի
որ համարի երկրորդ գտիչ սրբոյ Խաչին, վա-
սն որոյ Լանկլուա առէ զառաջնոյն՝ լինել վը-
րիպակ ժամանակագրական և յայլոց ումանց
հետագայից մուծեալ ի բնագիրն։ Թէպէտ
և չգուցէ մեր առձեռն պատրաստ վկայու-
թիւնք ի նպաստ ստուգութեան պատմու-
թեանս, յայլոց պատմաքանից երիցագունից
ժամանակաւ խօսեցեալ, սակայն չմերժանէ
ոք Թերևս ընդդէմ պատմական ստուգու-
թեան՝ կարծել զառաջին գիւտ խաչին ե-
ղեալ ի ձեռն Պատրոնիկեայ; որ եկաց յաւու-

րքս նախակարապետութեան Յակովբայ Տեառնեղբօր ։ Քանզի գրի առ մեզ ի Ճառընտիրս (1) ի վարս Հռիփսիմեայ կուսին որ էր յազգականութենէ Կղօդեայ կայսեր , բերեալ նորա ընդ իւր ի Հայս զմասն սրբոյ նշանին զոր Պատրոնիկեայ ընդ իւր տարեալ էր ի Հռոմ ի դարձին յԵրուսաղէմէ՝ խնդրելով զնոյն ի սրբոյն Յակովբայ, և այն է հաշտակեալն առ Հայս սուրբ խաչն Վարագայ ։ Իսկ եթէ առ քարոզութեամբ Թադէի , այսինքն յառաջին ամին համբառնալոյ Փրկչին չև էր տակաւին գտեալ սուրբ խաչն , յայնժամ կարեմք զայս և եթ ասել ի լուծումն տարակուսանաց , եթէ ի բուն բնագիրն առաքելոյն յետոյ յաւելեալ իցէ ի նորին Ղերուբնայ , զորմէ ասի եթէ գրեալ ի սկզբանէ մինչև ի կատարած զոր ինչ իրք եղեն Թադէի առաքելոյ ։ Քանզի . Թարգմանութիւնն Հայերէն մի և նոյն է ընդ բուն գրոցն , այն է յառաջնոյն մերոց Թարգմանչաց արարեալ՝ որպէս վերագոյն ցուցաք ։ Նա զի զժամանակս կարգի պատմութեանն ձգէ մինչև ցփախճան առաքելոյն , այն է ցամ Տեառն 51 , կամ ցու Թե-

(1) Տես Ճառընտր 154 . հատ . Դ . յէ . Յայսմաւուրք փետրուարի 26 . կամ մարտի Ձ . Վարք սրբոց վենետիկ . յէ . 1090 .

րորդ ամին կայսերութեն Կլօդիայ ըստ Միք· վարդապետի Չամչեան, վասն որոյ ոչ է զարմանալ եթէ ի քարոզութիւնս անդ արձանագրել և զանցս ինչ հետագայս և զվկայութիւն Ադդէի աշակերտի առաքելոյն ։ Սակայն խոստովանելի է և զայս, զի գտանին ի գիրս յայս և դուզնաքեայ փոփոխակք կարգի ժամանակաց, որպիսի է Սրապիոն եպիսկոպոսն յետին յայժ ժամանակաւ, յորմէ ասէ ընկալեալ Փղոտայ յաջորդին Ադդէի զձեռնադրութիւն իւր. այլ այսուիկ ոչ ինչ զօրէն յարուցանել տարակոյս ընդ միտս մեր ի վերայ հարազատութեան գրոցս, և ընծայել զայն այլում քան եթէ Պերուքնեայ. զոր ըստ մեզ և այլք 'ի քննաքանից ընդունին լինել հեղինակ գրուածոյս ։

Ի մերումս այս բնագրի, որպէս կանխեցաք ասացաք, ոչ յիշատակի պատմութիւն գիւտի խաչին, և թերևս այսու առ քննաքանս հարազատագոյն եւս համարիցի բնագիրս մեր, սակայն է ինձ և այս անհարկութիւն նշանաց և սքանչելեաց եղելոց, որպիսի ինչ յառնել դստերն Կլօդեայ ի յանկարծահաս մահուանէն. քանզի ասէ. «Ընթեմ առաջի ձեր իրք ինչ որ եղեն առժարդս». և սակաւ ինչ յառաջ անցեալ,

«Յակոբոս առաքինորդ եկեղեցւոյն Նորոսաղէմի որ ինքնին իսկ աչօք իւրովք տեսանէր զայս, գրեաց և ետ տանել ընկերաց իւրոց առաքելոյն ամենեցուն յաշխարհս և ի քաղաքս . . . »։ Իսկ թէ զինչ այն իցէ զոր առնէր Քրիստոս առ մարդիկ առ ի ձգել զնոսա ի ծանօթութիւն աստուածութեան իւրոյ, ոչ ինչ յիշատակէ։ Վասն որոյ և մեք ի կարգի մերում առեմք՝ եթէ զայսու պատմութեամբ զանց արարեալ իցէ օրինակօղն։

Նշեմք ևս, Թադէոս առաքեալ եկեաց մինչև յութերորդ ամն Աբգարու, և հաւեալ առ նա լուր սքանչելեացս ի Յակոբաոսէ առաքինորդէ եկեղեցւոյն Նորոսաղէմի, ըստ վկայելոյ գրոյն՝ զոր տեսաք, յետոյ առ ի գիտութիւն հաստատելոյ իւրոյ յաւել յարձանագրութիւնն ի ձեռն Ղերուբնայ դիւանադպրի արքունեաց, որում հազորդեալ էր ըստ նորին իսկ հայցելոյ՝ հարկանել ի մատենի զբարձրագոյն խորհուրդս վարդապետութեանցն Քրիստոսի, որ ի վեր էին մնաց հեթանոս մատենագրին։

Զայսոսիկ առանց պնդելոյ՝ զկարծիսն մեր միայն առաջի դնեմք քննասիրաց։ Իսկ զմիւս տարբերութիւնսն որ ի մէջ բնագրի

մերում և գաղղիականին, և զայլ ինչ ինչ ծանօթութիւնս նշանակեմք իւրաքանչիւր ի ներքոյ էջից. և զպատմութիւնն գիւտոյ խաչին որ եղեւ ի ձեռն Պատրոնիկեայ՝ դընեմք առանձինն յաւարտ մատենիկանս, հանելով ի մեծադիր ճառընտրէ գրատան սրբոյ Աթոռոյս, համար 1. համ. Գ. գլ. ՄՃԼԹ, (1) որ է բոլորագիր գրեալ Երուսաղէմ ի պատրիարքութեան Մարտիրոսի Եգիպտացւոյն. ի թուին հայոց ՊԿԸ (1419), հրամանաւ նախորդին իւրոյ Պօղոսի, մինչև ընկալեալ նորա զիշխողութիւն Աթոռոյն Սրբոյ. Իսկ բուն գործք Պերուբնայ գտանին ի ճառընտրի համար 154, քառահատոր. նօտրագիր գրեալ Երուսաղէմ ի թուին հայոց ՌՃՁԶ (1737), ձեռամբ Եղիա վարդապետի Նալաշ կոչեցելոյ, և պարունակի ՚ի գլուխն ՆԼԵ :

(1) Ի յաջորդ գլխոջ մի. պատմէ զերկրորդ գիւտոյ սրբոյ խաչին որ եղեւ ՚ի ձեռն Հեղինեայ մօր մեծին Կոստանդիանոսի.

քանի լերանց ։ Եւ իբրեւ չոգան նոքա առ-
նա, ընկալաւ զնոսա խնդութեամբ և մե-
ծարանօք. և եղեն առ նմա աւուրս քան
և հինգ ։ Եւ գրեաց նոցա թուղթս փոխա-
նակ թղթոյն զոր բերին նմա, և առաքեաց
զնոսա անդրէն առ Թագաւորն Աբգար ։
Եւ ելեալ նոցա ի նմանէն գնացին դէպ ու-
ղիղ ընդ ճանապարհ որ երթայր յԵրուսա-
ղէմ ։ Եւ տեսեալ նոցա զբազմութիւն մար-
դկան որ գային ի հեռաստանէ զի տեսանի-
ցեն զՔրիստոս, քանզի էր ելեալ համբաւ
սքանչելեաց և նշանացն զոր առնէր ընդ ա-
մենայն աշխարհ, գնացին և նոքա ընդ նոսա
Մարիհաբ և Շամշագրամ և Անան հաւա-
տարիմն արքային ։ Եւ իբրեւ մտին նոքա յԵ-
րուսաղէմ, նոյն ժամայն տեսին զՔրիստոս,
և ուրախ եղեն մեծապէս հանդերձ ժողո-
վրդովն որ ընդ նոսա ։ Եւ տեսանէին եւս
զՀրէայսն ժողովեալ ժողովս. և խորհէին
թէ զինչ արասցեն նմա. և սրտմտեալ էին
յոյժ խռովեալ Հրէայքն. զի տեսանէին
միջա զբազմութիւն մարդկան հեթանոսաց, որք
խառնակէին ի նա ։ Եւ լեալ նոցա յԵ-
րուսաղէմ աւուրս տասն (8) ։

Եւ գրեաց Անան հաւատարիմն արքային
զամենայն զոր ինչ ետես նա զոր առնէր Քրիս-

քրիստոս, և՛ զամենայն զոր ինչ միանգամ արա-
րեալ նորա յառաջագոյն, մինչև երթեալ
էին նոքա անդր։ Եւ գնացեալ անտի եկին
յԵդեսիա քաղաք. և մտեալ նոցա առաջի
Աբգարու թագաւորի տեառն իւրեանց,
ետուն նմա զպատճէն թղթոյն զոր բե-
րին անտի։ Եւ զինի ընթեռնլոյ զթուղթն,
սկսան պատմել առաջի թագաւորին զամե-
նայն ինչ զոր առնէր Քրիստոս Աստուած։
Եւ ընթերցեալ Անանիայ առաջի նորա զա-
մենայն որ ինչ միանգամ գրեալ և եղեալ ի
տուն իւր։

Եւ լուեալ զայն Աբգարու արքայի՝ զար-
մանայր մեծապէս. և ասէր ցաւագս և ցիշ-
խանս իւր որ կային առաջի նորա. «Այս
զօրութիւնք ոչ են մարդկան՝ այլ Աստուծոյ.
քանզի չիք ոք ի մարդկանէ որ կարէ յա-
րուցանել զմեռեալս՝ բայց միայն Աստ-
ուած»։ Կամեցաւ ինքնին երթալ ի Պաղես-
տինէ, զի աչօք իւրովք տեսցէ զՔրիստոս
և զամենայն նշանսն զոր առնէր. և վասն զի
չէր յիւր իշխանութեան աշխարհն Հռոմայե-
ցւոց որ ինքն երթալոց էր, զանի զի կայր-
զի մի պատճառք ինչ լինիցին թշնամութե։
Գրեաց այնուհետև թուղթ, և ետ տա-
նել առ Քրիստոս ի ձեռն Անանիայ հաւատարմայ

մի. Այս գնացեալ նորա յՈւռհայէ, որ օր չո-
րեքտասան էր արեգ ամսոյ, և մտեալ նորա յԵ-
րուսաղէմ, որ օր երկոտասան էր ահեկի ամ-
սոյ չորեքշաբաթի օր։ Այս գտեալ նորա զԹղթ ի
տան Գամաղիէլի քահանայապետութեան Հրէից,
և ընթերցեալ զթուղթն առաջի նորա, զոր
գրեալ էր այսպէս. «Աբգար Արշամայ՝ առ
Յիսուս բժիշկ մեծ(7), որոյ երեւեալ յեր-
կիրդ Հրէաստանի ի քաղաքին Երուսաղէմ։
Տէր լուայ վասն քոյ և վասն բժշկութեան-
ցդ՝ զոր առնես, զի ոչ դեղովք և արմա-
տօք բժշկես դու, այլ բանիւ զկոյրս լուսա-
ւորես, զկաղս գնացուցանես և զբորոտս
սրբես, և խլից լսել տաս, և զդեւս հալածես,
և զմեռեալս յարուցանես և զամենայն չար-
չարեալս և զախտամէտս բանիւ բժշկես։
Այս իբրեւ լուայ ես զայսպիսի մեծամեծ ս-
քանչելիս զոր առնես դու, եդի ի միտ ի-
մում և հաւատացի թէ Աստուած ես դու
և որդի Աստուծոյ որ իջեր յերկնից և առ-
նես զայդ ամենայն. վասն այսորիկ գրեցի
առ քեզ աղաչանս՝ գալ քեզ առ իս, զի եր-
կիրպագից քեզ. և բժշկեսցես զիս ի ցա-
ւոց և ի հիւանդութենէ իմմէ, որպէս հա-
ւատացի ի քեզ։ Այս զայս եւս լուայ եթէ
Հրեայք տրտնջեն զքէն և հալածեն զք-

քեզ , և կամին կորուսանել զքեզ. քաղաք մի է իմ փոքրիկ և փայլելուչ , և բաւական է երկոցունց մեզ բնակել ի սմա խաղաղութեամբ » :

Իսկ ընկալեալ Յիսուսի զթուղթն ի տան .քահանայապետին Հրէից , ասէ ցԱնան հաւատարիմ արքային. «Երթ և ասա (8) տեառըն քում որ առաքեաց զքեզ առ իս , երանի է քեզ զի հաւատացեր յիս մինչեւ տեսեալ քո զիս . զի այսպէս գրեալ է վասն իմ , զի որք տեսանեն զիս՝ ոչ հաւատան , և որք ոչ տեսանեն՝ հաւատասցեն : Իսկ զի գրեցեր դու առ իս գալ ինձ առ քեզ , վասըն որոյ առաքեցայ ես յաշխարհ . կատարեալ է ամենայն : Այսուհետեւ վերանամ առ Հայր իմ որ առաքեաց զիս . և յորժամ վերացայց առ նա , առաքեմ առ քեզ մի յաշակերտաց իմոց , զի բժշկեսցէ զքեզ և զամենայն ժողովուրդ քո որ ընդ քեզ . և դարձուսցէ զձեզ ի կեանս յաւիտենականս , և քաղաքդ քո օրհնեալ լիցի , և թըշնամի մի տիրեսցէ դմա յաւիտեան » : Իսկ իբրեւ լուաւ զայս ամենայն Անան զոր ասաց ցնա Յիսուս , առեալ նկարեաց ըզպատկերն Յիսուսի ընտիր դեղօք , քանզի արուեստաւոր թագաւորին էր , և բերեալ

մատոյց Աբգարու Թագաւորի տեառն իւրեանց ։ Եւ իբրեւ ետես Աբգար Թագաւոր զպատկերն Յիսուսի , ընկալաւ զնա մեծաւ ուրախութեամբ , և եդ զնա պատուով ի սենեկի իւրում յապարանս իւր ։ Եւ պատմեաց նմա Անան զամենայն ինչ զոր լուաւ ի Յիսուսէ ։

Եւ յետ վերանալոյն Քրիստոսի առ Հայր իւր յերկինս , Թովմաս մի յերկոտասանիցն առաքեաց առ Աբգար զԱդդէ (9) առաքեալ , այն որ մի յեւթանասունն և երկուցն էր ։ Եւ իբրեւ եկն Ադդէ առաքեալ յՈւռհա քաղաք , և եմուտ նա ի տուն Տուբիայ (10) որդւոյ Տուբէի հրէի , որ էր յաշխարհէն Պաղեստինացւոց . և լուր եղեւ վասն նորա ընդ ամենայն քաղաքն ։ Եւ մտեալ մի ի նախարարացն Աբգարու Թագաւորի որում անուն էր Աբդիու որդի Աբդուայ՝ ի գլխաւորաց քաղաքին , որ էր աթոռակից Թագաւորին , և ասէ ցնա . « Ահաւասիկ հրեշտակ ոմն եկեալ մտեալ է աստ . միթէ նա՞ իցէ սա , վասն որոյ առաքեաց (11) առ քեզ Յիսուս՝ եթէ յղեցից առ քեզ մի յաշակերտաց իմոց որ բժշկէ զքեզ » ։ Եւ իբրեւ լուաւ Աբգար արքայ վասն Ադդէի և վասն նշանացն զոր առնէր և բժշկութիւնս մե-

ծամենս, ած զմատս իւրով և հաւատաց ի սրտի իւրում՝ թէ ճշմարիտ նա է փառն որոյ առաքեացն առ նա՝ Յիսուս, թէ յորժամ վերացայց առ Հայր իմ յերկինս, առաքեցից առ քեզ մի յաշակերտաց իմոց որ բժշկեսցէ զքեզ։ Եւ յղեալ Աբգարու Թագաւորի կոչեաց զՏուբիա և ասէ ցնա. «Լուայ ես եթէ այր մի զօրաւոր եկեալ մտեալ է ի տուն քո. արդ ած զնա առ իս, զի գտանիցի ինձ յոյս բարի առողջութեան՝ որով բժշկեցայց ի ցաւոց իմոց»։

Եւ կանխեալ Տուբիայ ի վաղիւն և առեալ ընդ իւր զԱդդէ առաքեալ տարաւ զնա առ Թագաւորն։ Եւ գիտէր ինքն Ադդէ ի սրտի իւրում՝ թէ կարող եմ զօրութեամբն Աստուծոյ կատարել զամենայն կամս նորա։ Եւ իբրեւ եմուտ նա առ Աբգար Թագաւոր, մինչդեռ կային նախարարք և իշխանք մեծամեծք առաջի նորա. և ի մտանել նորա առ նա՝ տեսիլ զարմանալի երեւեցաւ Աբգարու յերեսաց Ադդէի. և ինմին ժամու իբրեւ ետես Աբգար զտեսիլն անկաւ առաջի նորա և երկիրպագնէր. և զարմացան ամենեքեան որ կային առաջի նորա, զի նոքա ոչ տեսանէին զտեսիլն որ երեւեցաւ Աբգարու։ Յայն

ժամ ասէ Աբգար ցԱդդէ. «Ճշմարիտ ասա ինձ՝ եթէ արդարեւ դու ես աշակերտ Յիսուսի զօրաւորին Որդւոյն Աստուծոյ, որ առաքեացն առ իս և ասէ, թէ յղեցից առ քեզ մի յաշակերտաց իմոց որ շնորհեսցէ քեզ բժշկութիւն և կեանս»։ Ասէ ցնա Ադդէ. «Քանզի յառաջագոյն հաւատացեր դու ի նա, վասն այնորիկ առաքեաց զիս առ քեզ. եթէ հաւատասցես դու ի նա բոլորով սրտիւ քով, զամենայն զոր ինչ խնդրես՝ եղիցի քեզ»։ Ասէ ցնա Աբգար թագաւոր. «Այնպէս հաւատացի ի նա, զի զՀրէայսն որ խաչեցինն զնա՝ կամեցայ երթալ զօրօք իմովք և սատակել զնոսա, և վասն թագաւորութեանն Հռոմայ արգելայ. քանզի ուխտ խաղաղութեան կացուցեալ էր ի միջի մերում ընդ իս և ընդ Տիբերիոս կայսր, որպէս հարցն մերոց առաջնոց»։ Ասէ ցնա Ադդէ առաքեալն. «Տէր մեր Յիսուս Քրիստոս իբրեւ կատարեաց զկամս Հօր իւրոյ, համբարձաւ առ ծնօղն իւր. և նստեալ նորա ընդ նմա ի փառսն յաւիտենից՝ յորում էրն ի սկզբանէ»։ Ասէ ցնա Աբգար թագաւոր. «Եւ ես հաւատամ ի նա և ի Հայր նորա»։ Ասէ ցնա Ադդէ առաքեալ. «Վասն զի հաւատացեր սրտի մտօք, դնեմ զձեռն իմ ի

վերայ քո յանուն նորա յոր հաւատացելոցն »: Եւ նոյն ժամայն եդ զձեռն իւր ի վերայ նորա, և բժշկեաց զնա ի հարուածոց ցաւոցն որ էր ի նմա ի բազում ժամանակաց: Եւ զարմացեալ Աբգարոս և սքանչացեալ մեծապէս, թէ որպէս լուեալն էր նորա վասն Յիսուսի, թէ որպէս (12) բժշկէր բանիւ առանց դեղոց յանուն Յիսուսի Քրիստոսի:

Եւ Աբդիու որդի Աբդէի իբրեւ ետես զի բժշկեցաւ Աբգար թագաւոր, մատոյց զոտս իւր առ նա զի պատագրոս էր. և եդեալ զձեռս իւր ի վերայ նորա և բժշկեաց զնա, և այլ ոչ եղեւ ի նա նոյնպէս: Եւ նոյնպէս յամենայն քաղաքին առնէր նշանս մեծամեծս և զօրութիւնս, և բժշկէր զամենայն ցաւս և զհիւանդութիւնս նոցա, և նշանս և զօրութիւնս ցուցանէր նոցա: Ասէ ցնա Աբգար. «Արդ ստուգեաւ գիտեմք ամենեքեան զի զօրութեամբ և անուամբն Յիսուսի Քրիստոսի առնես դու զսքանչելիս զայսոսիկ. և ահա զարմացեալ եմք ընդ ամենայն գործս քո: Աղաչեմք զքեզ զի պատմեսցես մեզ վասն գալստեանն Քրիստոսի, թէ զիարդ եղեւ, և վասն փառաւորեալ թագաւորութեանն նորա, և վասն սքանչելեացն զոր առնէր որպէս լուաք, զորս քո

տեսեալ հանդերձ այլ ընկերովք քովք ։ »
Ասէ ցնա Ադդէ առաքեալ . « Ես ոչ դադա-
րեմ ի քարոզելոյ , զի վասն այնորիկ առաքե-
ցայ այսր ասել և ուսուցանել ամենեցուն
որ միանգամ կամին հաւատալ իբրև ըզ-
քեզ ։ Արդ՝ հրաման տուր առ վաղիւ և
ժողովեա առ իս զամենայն քաղաքս . և սեր-
մանեցից ի սմա զբանն կենաց զոր քարո-
զեմ առաջի ձեր վասն գալստեանն Քրիստո-
սի . թէ զինչ եղեւ . և յաղագս Հօր ա-
ռաքչի նորա՝ թէ վասն էր , և կամ որպէս
առաքեաց զնա . և յաղագս զօրութեան նո-
րա և զարմանալի գործոց իւրոց , և վասն
փառաւորեալ խորհրդոց նորա զոր խաւ-
սեցաւ յաշխարհի . և վասն ճշմարիտ քա-
րոզութեան նորա՝ թէ որպէս և վասն էր
փոքրկացոյց զանձն իւր և խոնարհեցոյց ըզ-
բարձրութիւն աստուածութեան իւրոյ ի
մարդկութիւնս մեր զոր առ . և խաչեցաւ
կամօք իւրովք և էջ ի մեռեալս . և խրամա-
տեաց զգանկն զոր երբէք ոչ ոք էր խրամա-
տեալ . և կեցոյց զմեռեալս մահուամբ իւ-
րով . և իջեալ ինքն միայն և ելեալ հան-
դերձ բազմօք առ Հայր իւր փառաւորեալ ,
այն որ ընդ նմա էր ի սկզբանէ միով աս-
տուածութեամբն բարձրելոյ ։ »

Եւ հրամայեալ Աբգարու թագաւորի տալ Ադդէի առաքելոյ արծաթ և ոսկի և պարգևս բազումս։ Ասէ ցնա Ադդէ. «Ո՛վ իմարդ կարասցուք առնուլ զոր ինչ ոչ է մեր. զի ահա որ ինչ մերն էր՝ թողաք վասն պատուիրանին Տեառն. զի առանց քսակի և առանց մախաղի բարձեալ գնաց ի վերայ ուսոց մերոց հրամայեալ մեզ քարոզել զաւետարանն իւր ընդ ամենայն տիեզերս, այն որ ամենայն արարածք խմացան և չարչարեցան ի խաչելութեան նորա, որ եղեւ փոխանակ մեր ի փրկութիւն ամենայն մարդկան»։ Եւ պատմեաց նա զամենայն ինչ առաջի Աբգարու թագաւորի և առաջի ամենայն իշխանաց և նախարարաց նորա, և առաջի Աւգուստինեայ մօր Աբգարու և Շամաթեայ դստեր Անհրդաթայ կնոջ Աբգարու՝ զամենայն նշանսն և զսքանչելիսն Տեառն, և զփառաւորեալ զօրութիւն նորա զոր առնէր նա, և զաստուածեղէն զօրութիւնս նորա, և զվերանալ նորա յերկինս առ Հայր իւր. և թէ որպէս առնէր զօրութիւնս մեծամեծս իշխանութեամբ բազմա- ի ժամ վերանալոյն իւրոյ. և զի նովին զօրութեամբ բժշկեաց նա զԱբգար և զԱբդիու զորդի Աբդէի զերկրորդ թագաւորու-

թեան նորա ։ Եւ եցոյց նոցա թէ զխորհուրդ յայտնելոց է նա ի վախճան ժամանակաց և ի կատարածի ամենայն աշխարհի և ի յարութիւն կենդանութեան որ պատրաստեալ է լինել ամենայն մարդկան ․ և որոշումն լինելոց է ի մէջ գառանց և ուլուց և ի մէջ հաւատացելոց և անհաւատից ։ Եւ ասէ ցնոսա Ադդէ ․ « Վասն զի դուռն կենաց անձուկ է և ճանապարհն ճշմարտութեան նուրբ է , վասն այնորիկ սակաւք են հաւատացեալք ։ Եւ քանզի յանհաւատան հանգիստ է սատանայի , վասն այսորիկ բազումք են սուտք որ խաբեն զանեսօղս ․ այլ եթէ ոչ էր բարիոք կատարածն որ լինելոց է մարդոց հաւատացելոց , ոչ խնամէր Տէրն մեր յերկնից , և ոչ գայր ի ծնունդ և ի չարչարանս մահու , և ոչ առաքէր զմեզ զի լիցուք քարոզիչք և աւետարանիչք նորա , զոր տեսաք և լուաք ի նմանէն ․ զի որպէս և ուսուցանէր և առնէր համարձակութեամբ, քարոզեմք յայտնի ամենայն ուրեք զի մի զլացողք ճշմարիտ աւետարանի նորա լինիցիմք ․ և ոչ եթէ այս միայն , այլ և որ ինչ եղեւ յանուն նորա զկնի վերանալոյ նորա ցուցանեմք և քարոզեմք ամենեցուն (13) ։

« Արդ ասեմ առաջի ձեր իբր ինչ որ եղեն

տռ մարդս, որք իբրեւ զձեզդ հաւատացին եթէ Քրիստոս է նա որդի Աստուծոյ կենդանւոյ. Արդ՝ զամենայն ինչ զոր առնեն ընկերքն իմ առաքեալք, առաջի ամենայն ուրուք քարոզեն՝ զի լուիցեն ամենեքեան. որ ոչն գիտեն զոր ասէ Քրիստոս ի ձեռն մեր յայտնապէս, զի փառաւորեսցի անուն նորա յամենայն ուժեքէ: Արդ՝ զայս ամենայն զոր պատմեցի առաջի ձեր զի ի միտ առնուցուք և հաւատասջիք, եթէ որքան մեծ է անուն Քրիստոսի որ հաւատան ի նա ճշմարտութեամբ: Այլ Յակոբոս առաջնորդ եկեղեցւոյն Երուսաղէմի, որ ինքնին իսկ աչօք իւրովք եւտես զկրս զայս, գրեաց և ես առնել ընկերաց իւրոց առաքելոյն ամենեցուն յաշխարհս և ի քաղաքս որ շուրջ էին ի նոսա: Եւ նոքին իսկ առաքեալքըն ընկերակիցք նորա գրեն իսկ և ցուցանեն նմին իսկ Յակոբու զամենայն ինչ զոր առնէր Քրիստոս ի ձեռն նոցա, և ընթեռնուն և պատմեն առաջի ժողովրդեանն:

Եւ իբրև լուաւ զայս ամենայն Թագաւորն Աբգար և Շամաշէ դուստր Միհրդաթայ կնոջ նորա. և փոկրոյ և Աբէդ-Շէմայ և Շամշագրամ և Աբդիու և Ալի և Մարքազայս հանդերձ այլովք ընկերօք իւրեանց,

ուրախ եղեն յոյժ և փառաւորեցին զԱստուած ամենեքին խոստովանելով ի Քրիստոս։ Եւ Աբգար Թագաւոր զԱդդէ առաքեալ. «Կամիմ ես զի զամենայն ինչ զոր լուաք մեք ի քէն հանդերձ այլովք, առաջի ամենայն քաղաքիս ասասցես յայտնապէս, և լուիցէ ամենայն ոք զքարոզութիւն աւետարանին Քրիստոսի զոր ուսուցանես դու. և հանգիցուք և հաստատեսցուք ի վարդապետութեանդ քում զոր ուսուցանես դու մեզ. և ի միտ առեալ բազմաց թէ յիրաւի հաւատացի ես ի Քրիստոս թղթովն իմով զոր առաքեցի ես առ նա. և իմացին ամենեքեան թէ Աստուած է նա և որդի Աստուծոյ, և դու ճշմարիտ և հաւատարիմ աշակերտ ես նորա, և զփառաւորեալ զօրութիւն նորա արդեամբք ցուցանես առաջի ամենեցուն որք կամին հաւատալ ի նա»։

Եւ զկնի աւուրն այնորիկ հրամայեաց Աբգար Թագաւոր Աբդուայ որդւոյ Աբդեէի որ բժշկեալ էր ի դառն ցաւոց ոտից իւրոց, զի առաքեսցէ քարոզս կոչել զամենայն քաղաքն. և ժողովեսցի ամենայն քաղաքն արք և կանայք ի տեղի մի կոչեցեալ Բեթբարոյ, անդորր (14) տեղի մերձ տանըն (15) Աւիդեայ որդւոյ Աբդելխէի, զի

լուսիցեն զվարդապետութիւն Ադդէի առաքելոյ, թէ զիարդ ուսուցանէր, կամ ո՞ր անուամբ բժշկէր, և կամ որո՞վ զօրութեամբ առնէր նշանս և սքանչելիս: Քանզի յորժամ բժշկեաց զԱբգար թագաւոր, նախարարք իւր միայն կային առաջի նորա, որք տեսին զի բանիւ Քրիստոսի բժշկեաց զնա, զոր բազում բժիշկք մեծաւ աշխատութեամբ ոչ կարացին բժշկել զնա. և այր մի օտար բժշկեաց զնա միայն բանիւն Քրիստոսի:

Եւ իբրեւ ժողովեցան ամենայն քաղաքըն արք և կանայք ըստ հրամանի թագաւորին, և էին անդ Աւիդա և Պաքքու և Խափէս և Բարքալբա և Պուբուբնա և Խոսրով և Շամշագրամ հանդերձ այլովք ընկերօք իւրեանց, որք իբրեւ զնոսա էին գլխաւորք և նախարարք թագաւորին, և ամենայն զօրք նորա, և բազում մարդիկ արուեստաւորք. Հրեայք և հեթանոսք որք էին ի քաղաքիս յայսմիկ և օտարք որ յայլոց աշխարհաց, Մծբնացիք և Խառանացիք հանդերձ բնակչօք ամենայն աշխարհին Միջագետաց,, եկեալ ժողովեալ միախառն կային ամենեքեան բազում ամբոխ, զի լուսիցեն վարդապետութեանն Ադդէի առաքելոյ:

Քանզի լուեալ էր Նոյա եթէ աշակերտ է նա Յիսուսի որ խաչեցաւն յԵրուսաղէմ, և անուամբ նորա առնէ զամենայն նշանս և մեծամեծ բժշկութիւնս։ Եւ սկսեալ Ադդէի տալ ցնոսա այսպէս (16). «Լուարուք ամենեքեան և ի միտ առէք զոր ինչ ասեմ առաջի ձեր. զի ոչ եթէ բժիշկ եմ ես իբրեւ զայլ ոք ի մարդկանէ որք բժշկեն դեղովք և արուեստիւք (17) մարդկան, այլ աշակերտ եմ Յիսուսի Քրիստոսի ճշմարիտ բժշկին անձանց տառապելոց, և փրկիչ ամենայն մարդկան, որդի Աստուծոյ որ էջ յերկնից և զգեցաւ զմարմին մարդկութեանս մերոյ, և ետ զանձն ի խաչելութիւն փոխանակ ամենայն որդւոց մարդկան. և ի կախելն իւրում ի խաչափայտին՝ խաւարեցոյց զարեգակն յերկինս, և իբրեւ եմուտ ի գերեզմանն՝ յարուցեալ յերրորդ աւուր ել ի գերեզմանէն հանդերձ բազմօք. և որ պահէին ըզգերեզմանն ոչ տեսին թէ զիարդ ել ի գերեզմանէն, այլ զօրութիւնք երկնից և բազմութիւնք հրեշտակաց լինէին քարոզք եւ աւետարանիչք յարութեան նորա. զի եթէ չէր կամեցեալ՝ ոչ մեռանէր, քանզի Տէր է նա կենաց և մահու. և ինքն կամօք զգեցաւ զմարմին մարդկութեանս մերոյ, զի

նա ինքն է ստեղծիչ մարմնոց . և ինքն կամօք
իւրովք խոնարհեցաւ ծնանել ի կուսէն և
ինքն կամօք իւրովք խոնարհեցաւ ի չարչա-
րանս խաչին , և խոնարհեցոյց զմեծութիւն
աստուածութեան իւրոյ. այն որ էր բարձրեալ
և հաւասար Հօր ի սկզբանէ և յաւիտենս .
զորմէ խօսեցան խորհրդով մարգարէքն որ
յառաջ քան զմեզ էին , և պատմեցին և
ցուցին զկերպարանս ծննդեան նորա և զչար-
չարանաց և զվերանալոյ նորա յերկինս առ
Հայր իւր . և փառս նստելոյ նորա ընդ աջ-
մէ մեծութեանն (18) ի բարձունս . և անհա
երկրպագի յերկնաւորաց և յերկրաւորաց՝
որպէս էր ի սկզբանէ և յաւիտեան . Թէ-
պէտ և տեսանէին զնա իբրև զմարդ , այլ
իմաստութիւն և զօրութիւն փառաւորի
Որդի մարդոյ (19) , և Աստուած փառաւորի ի
նմա . և Աստուած փառաւորէ զնա յանձն
իւր զօրութեամբ և սքանչելեօք և պատուով
որ ընդ աջմէ : Բայց մարմինք նորա ծիրանիք
սուրբ են աստուածութեանն իւրոյ , զի
նովաւ կարացուք նայել և տեսանել զանե-
րեւոյթ տէրութիւն նորա : Զայն իսկ զայս
Քրիստոս քարոզեմք և աւետարանեմք , և
ընդ նմին զՀայրն իւր փառաւորեմք , և
սուրբ Հոգին աստուածութեանն իւրոյ

բարձրացուցանեմք , և երկիրպագանեմք , քանզի զայս պատուիրան ընկալաք ի Նմանէն՝ մկրտել և օրհնել զայնոսիկ ոյք հաւատան յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ։ Նա՝ մարգարէքն որ յառաջ քան զմեզն էին այսպէս ասէին , Թէ Տէր և Աստուած առաքեաց զմեզ և Որդի նորա ։ Իսկ եթէ ասեմք ինչ աւելի որ ոչ գրեալն է ի մարգարէս, մի ընկալցին զիս Հրեայք որ կան ի միջի ձերում և լսեն զբանս իմ ։ և եթէ յիշեմ ես զանունն Քրիստոսի ի վերայ ամենայն ախտացելոց և հիւանդացելոց , և ոչ նոյն ժամայն բժշկին անուամբ փառաւորելոյն , մի հաւատասցեն ինձ ոյք երկիրպագանեն ձեռագործաց իւրեանց ։ Իսկ եթէ գրրեալ են ի գիրս մարգարէիցն զոր ինչ ասեմ ես , և կարող եմ ցուցանել զզօրութիւն բժշկութեանցն ի հիւանդս , մի ոք հայեսցի ի մեզ երկմիտ հաւատով . զի քարոզեմք մեք Թէ Աստուած խաչեցաւ (20) փոխանակ ամենայն որդւոց մարդկան . և եթէ են որ ոչ կամին հաւանել բանից մերոց այսոցիկ , մերձեսցին առ մեզ և յայտնեսցեն մեզ ըզմիտս իւրեանց , զի ըստ հիւանդացեալ խորհրդոցն իւրեանց դիցուք դեղ բժշկութեան վերայ նոցա ։ Թէպէտ և չէիք մերձ

ի ժամանակի չարչարանաց Քրիստոսի, այլ արեգակն զի խաւարեցաւ՝ տեսէ՞ք դուք. Այսու հետեւ ուսարուք եւ ի միտ առէք վասն մեծի գղրդմանն որ եղեւ ի ժամու խաչելութեանն նորա. (21) որոց թուեցեալ աւետարանն ընդ ամենայն տիեզերս նշանօք եւ արուեստիւք զոր առնէին աշակերտք նորա ընկերակիցք մեր յամենայն երկրի ուր են Եբրայեցիք. եւ զլեզու Եբրայեցի միայն գիտէին՝ յորում ծնեալ իսկ էին, ահաւասիկ յամենայն լեզուս խօսէին զի լուիցեն հեռաւորք եւ հաւատասցեն իբրեւ զմերձաւորս, թէ նա է որ ետ նոցա լեզու եւ իմաստութիւն լսել եւ խօսել յայլ լեզուս, որպէս յառաջին ժամանակս խառնակեցան (22) զլեզուս ժպիրհ մարդկանն որ ի կողմանս յայսոսիկ առաջի մեր է: Եւ նոյն իսկ է որ ուսուցանէ ի ձեռն մեր այսօր զհաւատս ճշմարտութեան եւ ստուգութեան տկարովք եւ տառապելովք, որ ի Գալիլեա Պաղեստինացւոց: Սակայն եւ զիս տեսանէք որ ի Սանիրայէ (23) եմ, ուստի եւ Յորդանան գետ ելանէ. եւ ընտրեցայ ես ընդ ընկերակիցս իմ լինել ինձ քարոզիչ աւետարանին, զի նովաւ աւասիկ որոտան ամենայն տիեզերք փառաւորեալ անուամբն Քրիստոսի երկր-

պատուիրս ։ Մի՛ ոք այսուհետեւ ի ձէնջ խոստացուցանէ զմիտս իւր իմաստութենէ , եւ մի՛ գերեսցէ զինքն զհնի խորհրդոց կորստական մոլորութեամբն , որք լի են յուսահատութեամբ դառն մահուամբ . եւ մի՛ ըմբռնիք ի չար սովորութիւն հեթանոսութեան հարցն ձերոց հեռանալ ձեզ ի ճշմարիտ եւ ի ստոյգ կենացն որ ի Քրիստոս ։ Քանզի որք հաւատան ի նա . նոքա լինին հաւատարիմք առաջի նորա . որոյ իջեալ առ մեզ գթութեամբ իւրով , խափանեալ յերկրէ զզոհս հեթանոսականս եւ զնուէրս կռապաշտութեան , զի մի՛ եւս երկիրպագանիցեն արարածոց . բայց միայն նմա եւ Հօր իւրում հանդերձ սուրբ Հոգւովն նորա երկիրպագանեմք ։ Այլ եւ որպէս հրամայեաց ինձ Տէրն իմ քարոզել եւ աւետարանել , եւ զարծաթըն նորա արկանել ի վերոյ սեղանոյ աւասիկ առաջի ձեր . եւ զսերմն բանի նորա սերմանել յականջս ամենայն ուրուք , եւ որք կամին ընդունել՝ նոցա հատուցումն բարի խոստովանութեան իւրեանց . եւ որք ոչ հաւատան ի մեզ՝ զփոշի ոտից թօթափեմք ի վերայ նոցա որպէս եւ հրամայեալ է մեզ ։

«Արդ ապաշխարեցէք այսուհետեւ սիրելիք , ի չար ճանապարհաց եւ յաղտեղի գործոց

եւ դարձարուք առ Աստուած բարիոք եւ ազ-
նիւ կամօք, զի դարձցի առ ձեզ գթութեամբ
եւ ողորմութեամբ իւրով ։ Եւ մի լինիք որպէս
զհարսն առաջինս որ անցին, վասն զի խրա-
տացուցեալ նոցա զմիտս իւրեանց յերկիւ-
ղին Աստուծոյ՝ ընկալան նոքա զպատուհաս
յայտնապէս, զի նոքա խրատեցին եւ ոչ ըղ-
կնի նոցա գալոց են՝ զարհուրեցին եւ երկի-
ցեն ։ Բայց զի եկն Տէր մեր յաշխարհս, զի
ուսուցանիցէ եւ յայտնեսցէ մեզ եթէ կա-
տարած աշխարհի լինի եւ յարութիւն որդւոց
մարդկան. եւ յայնժամ նկարին վարք իւ-
րեանց ի պատկերս իւրեանց, եւ լինին մար-
մինք նոցա իբրեւ զմագաղաթ լի գրով ճըշ-
մարտութեամբ ։ Եւ ոչ ոք է որ ոչ գիտէ
դպրութիւն. քանզի ամենայն ոք ընթեռնու
զգիր դպրութեան իւրոյ, եւ զհամար գոր-
ծոց իւրոց ի մատունս ձեռաց իւրոց ունի,
որպէս զի տգէտք եւ տխմարք գիտուն եւ տե-
ղեակք լինին դպրութեան նորոյ եւ լեզուի
նորոյ. եւ չիք ոք որ ասիցէ ցընկեր իւր՝ ըն-
թերցիր ինձ զայս, վասն զի մի վարդա-
պետութիւն եւ մի ուսումն թագաւորէ ի
վերայ որդւոց մարդկան (24) ։

«Արդ՝ նկարեցի այսուհետեւ հոգս
այս առաջի աչաց ձերոց, եւ մի անցանիցէ

ի մտաց ձերոց. քանզի թէպէտ և ի խոր-
հրդոց ձերոց անցանէ, սակայն ի ճշմարտու-
թենէ ոչ անցանէ։ Խնդրեցէք զողորմու-
թիւն Աստուծոյ թողուլ ձեզ զպարտելի ու-
րացութիւն հեթանոսութեան ձերոյ, զի
թողեալ ձեր զԱստուած որ արար զձեզ ի
վերայ երեսաց երկրի, և իջուցանէ զանձ-
րեւ իւր և ծագէ զարեգակն իւր ի վերայ
ձեր, և երկիրպագանէք փոխանակ նորա ա-
րարածոց նորա։ Այլ կուռք և դրօշեալ
պատկերք հեթանոսաց և ամենայն որ ինչ
միանգամ արարածք են՝ յորս յուսացեալ էք
և երկիրպագանէք դուք նոցա, եթէ էր ի
նոսա զգայութիւն իմաստութեան և իմա-
նային, փոխանակ զի դուք երկիրպագանէք և
պաշտէք զնոսա, նոցա արժան էր շնորհա-
կալ լինել ձեզ զի դրօշեցէք և կազմեցէք
զնոսա, և հաստատեցէք զնոսա բևեռօք
զի մի շարժեսցին։ Այլ թէ իմանային ար-
դեւք արարածք զպատիւդ ձեր զոր առնէք
դոցա, պաղատէին և ասէին ձեզ՝ թէ մի պա-
գանէք երկիր ընկերակցաց ձեր, որ իբրև
զձեզ ստեղծեալ եմք և ի ձէնջ արարեալ։
Քանզի ոչ եթէ երկրպագեսցին արարածք
վասն այնր հաստատեցան, այլ զի երկիր-
պագանիցեն Արարչին իւրեանց, և փառա-

ւորեսցեն զայն որ հաստատեացն զնոսա և որ-
պէս զի ընդ յարկաւ առնեն շնորհք Նորա (25)
զժպիրհս, սոյնպէս պատրաստեալ է և ծըր-
մարտութիւն Նորա վրէժխնդիր լինել անդ-
ամենայն ուրացողաց։ Այլ զի տեսանեմ
ես զքաղաքս զայս, զի կարի յոյժ լի է հե-
թանոսութեամբ ընդդէմ Աստուծոյ։ Ո՞ է
այն Նաբոյ կուռք արարեալ որում երկիր-
պագանէք. ո՞ Բէլդ զոր պատուէքդ։ Ահա-
ւասիկ են ոմանք ի ձէնջ որ երկիրպագանեն
Բալթնիքաղայ որպէս զխառաւանացիս դրա-
ցիս ձեր, և Թարթայ (26) իբրու զՔութա-
ցիս, և արեգական և լուսնի և արծւոյ իբ-
րեւ զԱրաբացիս։ Մի պատրիք ի նշոյլս լու-
սոյ ի ծագել արուսեկին, զի անիծեալ է ա-
ռաջի Աստուծոյ ամենայն որ երկիրպագա-
նէ արարածոց. այլ թէպէտ և իցեն արա-
րածք որ մեծագոյն թուին ձեզ քան զըն-
կերս իւրեանց, սակայն ընկերակիցք են
միմեանց որպէս ասացի ձեզ. քանզի ցաւ
դառնութեան է այս՝ որոյ չիք բժշկու-
թիւն, զի երկիրպագանիցեն արարեալք ա-
րարելոց, և փառաւորեսցեն արարածք զըն-
կերակիցս իւրեանց։ Զի որպէս չեն կա-
րող օգնել անձանց իւրեանց, այլ ի զօրու-
թիւնն խնամոց դարմանին որ հաստատեաց

զնոսա, սոյնպէս ոչ են կարող առնուլ երկրպագութիւն և պատիւ ընդ նմա որ արարն զնոսա. զի հայհոյութիւն է յերկոսին յարարածս, յորժամ երկրպագի նա և Արարիչըն, յորժամ հաղորդակից լինին նմա արարածք՝ որ օտար են ի բնութենէ էութեան նորա: Այլ ամենայն մարգարէութիւն մարգարէիցն և քարոզութիւն մեր որ զկնի մարգարէիցն ասացաք, այս է՝ զի մի երկրպագեսցին արարածք ընդ Արարչին արարածոց, և մի եւս լծեսցին որդիք մարդկան ի լուծ հեթանոսութեան ապականութեան: Ոչ եթէ վասն զի երեւին արարածք՝ սակս թէ մի երկրպագեսցին, այլ ամենայն որ ինչ միանգամ հաստատեալ է՝ արարած է, եթէ երեւի և եթէ ոչ երեւի. վասն զի դառն ամբարշտութիւն է այս, անուանել նմա զանուն փառաւորեալ աստուածութեանն. զի ոչ եթէ իբրեւ զձեզ զարարածս քարոզեմք և երկրպագանեմք, այլ զՏէրն արարածոց: Բայց շարժումն որ դողացուցանէ զնոսա, նա վկայէ թէ ամենայն ինչ արարած է, և ի զօրութիւն Արարչին կախեալ կայ, այն որ էրն յառաջ քան զյաւիտեանս, որոյ ոչ քննի բնութիւն նորա. վասն զի ոչ երեւի բնութիւն նորա. և ընդ Հօր իւ-

րում փառաւորի ի բարձրութիւն բարձանց, քանզի Տէր է նա և Աստուած յաւիտենից։

«Այս է վարդապետութիւն մեր յամենայն կողմանս աշխարհաց, և այսպէս հրամայեցաւ քարոզել այնոցիկ ոյք լսեն մեզ. ոչ եթէ բռնադատութեամբ, բայց վարդապետութեամբ. ճշմարտութեան և զօրութեամբ Աստուծոյ. և նշանք որ լինին յանուն նորա, նոքա վկայեն վասն հաւատոց մերոց՝ թէ ճշմարիտ են և հաւատարիմ։ Հաւանեցարուք այսուհետև բանից մերոց, և ընկալարուք զոր ինչ ասացի և ասեմ առաջի ձեր։ Այլ զի մի խնդրեսցի վըրէժ յինէն, յաճախեմ դնեմ առաջի ձեր զգուշութիւն. ընկալարուք զբանս իմ որժանապէս և մի անփոյթ առնէք։ Դարձարուք, հեռացեալք ի Տեառնէ, և լերուք մերձաւորք Քրիստոսի. և փոխանակ զոհից և նուիրաց մոլորութեան ձերոյ՝ մատուցէք նմա այսուհետև պատարագս գոհութեան։

«Ո՞ր ինչ իցէ արդեւք բագինդ մեծ զոր շինեալ է ձեր ի մէջ քաղաքիս, և որք երթան և գան առ նա և նուիրեն ի վերայ նորա դիւաց, և զոհեն ի դմա այսոց պղծոց։ Այլ եթէ զորոց հմուտ չէք, ինքն իսկ ձեւ բնութեան տեսլեամբ իւրով չուսուցանէ՞

զձեզ, զի այս ունին կուռքդ՝ և ոչ տեսանեն. և դուք որ զաչօղ ունիք, փոխանակ զի ոչ առնուք ի միտ՝ նմանիցէք նոցա զի ոչ տեսանեն և ոչ լսեն. և տարապարտուց ձեպեալ ձայնք ձեր յունայնութեան յականջս լսացեալս, ոչ եթէ նոքա մեղադրին այնու զի ոչ լսեն, քանզի բնութեամբ են խուլ և համր, բայց դուք էք մեղադրելի, յորում ճշմարտութիւնն ծածկեալ է, և ոչ կամիք ի միտ առնուլ և ոչ տեսանէք. քան-զի ոչ թողուն զձեզ մեղքն մոլորութեան որ ծածկեալ ունին զմիտս ձեր՝ տեսանել ձեզ զլոյսն երկնային, որ է հանճար իմաստութեան:

«Փախերուք այսուհետեւ ի ստեղծելոց և յարարելոց որպէս ասացի ձեզ, զի անուամբ միայն կոչին աստուածք, և ոչ եթէ բնութեամբ են աստուածք. և մերձեցարուք առ այն որ բնութեամբ է Աստուած. և ոչ եթէ արարած է նա որպէս զկուռսդ ձեր, և ոչ եթէ ստեղծեալ և հաստատեալ իբրեւ զպատկերսդ ձեր, որով դուքդ պարծիք. Ո՜ի թէպէտ և զգեցաւ զմարմինս մեր, այլ Աստուած էր ընդ Հօր իւրում. բայց արարածք որ շարժեցան ի խաչելութեան նորա, և խռովեցան ի չարչարանս մահու նո-

րա, Նոքին իսկ վկայեն զի Նա է Արարիչ ա-
րարածոց. զի ոչ եթէ փոխանակ մարդոց
շարժեցաւ երկիր, այլ վասն այնորիկ որ հաս-
տատեալ է զերկիր ի վերայ ջուրց: Եւ ոչ
եթէ վասն մարդոյ խաւարեցաւ արեգակն
յերկինս, այլ փոխանակ այնր որ արար զլու-
սաւորս մեծամեծս: Եւ ոչ եթէ մարդով
յարուցեալ արդարոց և որբոց, այլ այ-
նու որոյ տուեալ ի սկզբանէ զիշխանու-
թիւն կենաց և մահու: Եւ ոչ եթէ վասն
մարդոյ պատառեցաւ վարագոյր տաճարին
ծայրէ ի ծայր, այլ վասն այնորիկ որ ասաց
ցնոսա, եթէ Ահա թողեալ լիցի տունդ
ձեր աւերակ: Ահաւասիկ թէ չէր ծանու-
ցեալ խաչահանուացն՝ եթէ որդի է Նա
Աստուծոյ, ոչ զաւեր քաղաքին իւրեանց
քարոզէին և ոչ ի վերայ անձանց վայ կար-
դային: Նա և ոչ եթէ կամեցեալ էր նոցա
լսել յայնմ խոստովանութենէ, թողին
զնոսա ահագին դղրդմունքն որ եղեն (27) յայ-
նըմ ժամու: Ահա այսու հետև յորդւոց խաչա-
հանուացն դարձան և եղեն քրիստոնեայք (28),
քարոզիչք և աւետարանիչք ընդ ընկերակի-
ցըս իւր, և առաքեալս յամենայն երկիրն Պա-
ղեստինացւոց, և ի մէջ Սամարացւոց և
յամենայն աշխարհին Փղշտացւոց: և անար-

գեալ են կուսք հեթանոսաց, և պատուի
խաչն Քրիստոսի. և խոստովանին ամենայն
ազգք և ամենայն արարածք Աստուածն՝
որ եղեւ մարդ: Զի եթէ մինչ յերկրի էր
Տէր Յիսուս, հաւատացեալ էր ձեր ի նա՝
թէ Որդի Աստուծոյ է, և յառաջ քան ըզ-
լինել ձեզ զաւետիս քարոզութեան նորա
գոհացեալ ձեր զնմանէ՝ թէ Աստուած է.
և արդ՝ զի վերացեալ է առ Հայր իւր, և
տեսէք զնշանսն և զսքանչելիսն որ լինին
յանուն նորա, և զբան աւետեաց նորա լը-
սէք ականջօք ձերովք, մի՛ ոք ի ձէնջ երկմը-
տեսցէ ի խորհուրդս իւր, որպէս զի հաս-
տատուն կայցէ առ ձեզ խոստումն օրհ-
նութեան նորա, որ առաքեաց առ ձեզ՝
թէ երանի ձեզ զի հաւատացէք յիս մինչ-
չեւ տեսեալ իսկ ձեր զիս: Եւ զի այսպէս
հաւատացէք յիս, քաղաքն յորում բնա-
կեալ էք դուք՝ օրհնեալ լիցի, և թշնամի մի՛
տիրեսցէ դմա յաւիտեան: Մի՛ այսուհետեւ
խոտորիք ի հաւատոց նորա, զի անհաւատիկ
լուարուք և տեսէք զամենայն զոր քարոզե-
ցաք ձեզ, թէ Որդի երկրպագեալ և Աս-
տուած փառաւորեալ, և թագաւոր յաղ-
թող և զօրութիւն անյաղթ. և հաւատով նո-
րա կարօղ էք ստանալ զաչս ճշմարիտ միտաց

և ապա ի միտ առնուլ՝ թէ որ միանգամ եր-
կիրպագանէն արարածոց, բարկութիւն սրտ-
մտութեան հասանէ նմա:

«Արդ զամենայն որ ինչ միանգամ ա-
սեմք առաջի ձեր, որպէս ընկալաք մեք ի
պարգեւացն Տեառն, ասեմք և ուսուցա-
նեմք, և ցուցանեմք ստանալ ձեզ զկեանս
ձեր: Այլ մի կորուսանէք զհոգիս ձեր ի մոլո-
րութիւն հեթանոսական. քանզի ծագեալ
է լոյսն երկնային յամենայն աշխարհի, և
նա ինքն է որ ընտրեաց զհայրապետսն ա-
ռաջինս և զարդարսն և զմարգարէսն, որոց
խօսեցեալ ընդ նոսա յայտնութեամբ Հոգ-
ւոյն սրբոյ: Քանզի նա ինքն իսկ է Ա-
ստուած Հրէից խաչահանուացն, և հեթա-
նոսք մոլորեալք նմա (29) երկիրպագանեն՝
թէպէտ և ոչ գիտեն. քանզի չէք այլ Ա-
ստուած ոչ յերկինս և ոչ յերկրի, և ահա
յերկրի (30):

«Ահա այսուհետեւ լուան ականջք ձեր
զոր ինչ ոչ էր լուեալ ձեր. մի այսուհետեւ
լինիք կլացողք կոր լուայքդ և տեսէքդ: Ի
բաց արարէք ի ձէնջ զմիտս ապստամբողս
հարցն ձերոց, և ազատեցէք զանձինս ձեր ի
տուժից մեղաց որ թագաւորեալ է ի վերայ
ձեր նուիրօք և զոհիւք դիւօշելոց. և փոյթ

լիցի ձեզ յաղագս կենաց ձերոց կորուսե-լոց, և վասն ընդվայր խոնարհութեան գըլ-խոց ձերոց. և ստացարուք զմիտս նորս (31), և երկիրպագէք Արարչին արարածոց, յո-րում նկարեալ են նկարագիր ճշմարտու-թեան և սուրբ Հօր և Որդւոյ և սուրբ Հոգւոյն, իբրև հաւատայք և մը-կրտիք յանուն փառաւորեալ Երրորդու-թեան:

«Այս իսկ է վարդապետութիւն մեր և քարոզութիւն. ոչ եթէ բազում ինչ իրօք հաւատարիմ լինի ճշմարտութիւնն Քրիստո-սի, որք կամին հաւանել Քրիստոսի: Գի-տէք դուք զի բազում անգամ կարգեցի ըզ-բանս իմ առաջի ձեր, ուսանել ձեզ և ի-միտ առնուլ զոր ինչ լուայք և տեսէք դուք, և մեք ուրախ լիցուք սովիմբ որպէս հողագործ յօրհնեալ սերմանիս իւր, և Աս-տուած փառաւորեսցի յապաշխարութեա-նըդ ձերում որ առ նա: Եւ յորժամ հաւա-նեսջիք ճշմարտութեանն, կելով կեցջիք. և մեք որ յորդորեմք զձեզ այս, ոչ զրկիմք յօրհնեալ վարձուց քարոզութեանս մերոյ. վասն զի վստահ եմք լինել ձեզ երկիր օրհ-նեալ ըստ կամաց տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Վասն այսորիկ փոխանակ զմոշն

ատից մերոց՝ որ ասացաւ. մեզ թօթափել վերայ քաղաքիս որ ոչ ընդունին զբանս մեր, ահա թօթափեմք այսօր ի դրունս ականջաց ձերոց զպատգամս շրթանց մերոց, զի ի նոսին նկարեալ է գալուստն Քրիստոսի որ եղեւ և որ պատրաստեալ է գալ, և յարութիւն և կեանք ամենայն որդւոց մարդկան։ Եւ որոշումն որ լինի ընդ հաւատացեալս և ընդ ուրացողս. և պատուհաս չարի որ պահեալ է որք ոչն գիտեն զԱստուած. և զօրհնեալ խոստումն ուրախութեան զոր պատրաստեալ են ընդունել որք հաւատացին ի Քրիստոս, և երկիրպագին նմա և Հօր իւրոյ բարձրելոյ. և խոստովանեցին ի նա և ի Հոգին Աստուածութեան իւրոյ։ Արդ՝ այսուհետեւ առժամ մի կատարել արժան է մեզ զբանս մեր. և որոց ընկալեալ զբանն Քրիստոսի՝ մնասցեն առ մեզ, և ոյք կամին հաղորդել ընդ մեզ յաղօթս; և ապա երթիցեն ի տունս իւրեանց"։

Եւ իբրեւ զայս ասաց՝ ետես զի բազում մարդիկ քաղաքին մնացին անդէն, և սակաւք էին որ ոչ մնացին յայնմ ժամու. և ուրախ եղեւ մեծապէս Առաքեալ։ Բայց և նոցին իսկ սակաւուց չինի սակաւ

աւուրց ընկալեալ զբանս նորա, և հաւատացեալ յաւետիս քարոզութեանն Քրիստոսի։ Եւ երբեւ ասաց զայս ամենայն Ադդէ առաքեալ առաջի ամենայն քաղաքին Ուռհայի, և ետես Աբգար թագաւոր թէ ամենայն քաղաքն ուրախ եղեւ ընդ վարդապետութիւն նորա, արք և կանայք ի միասին. և ասեն ցնա. «Ճշմարիտ և հաւատարիմ է Քրիստոս, որ առաքեաց զքեզ առ մեզ»։ Եւ նա իսկ թագաւորն եւս առաւել ուրախ եղեալ յայսմ՝ յոյժ փառաւորէր զԱստուած. զի որպէս իւր լուեալ էր յաղագս Քրիստոսի, նոյնպէս տեսանէր զզօրութիւնս և զզարմանալիս զոր առնէր Ադդէ առաքեալ անուամբն Քրիստոսի։ Եւ ասէ ցնա Աբգար թագաւոր, թէ «Որպէս յղեցի ես առ Քրիստոս ի թղթին իւրում (32), և որպէս նա յղեաց առ իս, և ընկալայ ես ի քէն այսօր, նոյնպէս հաւատամ զամենայն աւուրս կենաց իմոց. և ի նմին կամ մնամ պարծելով։ Քանզի ի միտ առեալ իմ եթէ չէք այլ զօրութիւն որ առնի անուամբ իւրով նշանք և սքանչելիք, բայց միայն զօրութեամբն Քրիստոսի զոր առնես դու մեզ ստուգութեամբ (33)։ Եւ արդ այսուհետեւ նմա երկրպագանեմ ես, և

Մայանու (34) որդի իմ և Աւգոստինէ և Շը-
ղամաթէ թագուհի ։ Եւ արդ ուր և կամիս
դու շինեա եկեղեցի ժողովրդեանց՝ որոց և
հաւատացին և որք հաւատան բանից քոց ․
և որպէս հրամայեաց Տէրն քո՝ եղիցես պաշ-
տել համարձակութեամբ յամենայն ժամու ․
և որք կամին լինել ուսուցիչք և քարոզք
աւետարանիս այսորիկ ․ պարգեւս մեծամե-
ծըս շնորհեմ նոցա ։ Եւ այլ ինչ գործ մի
լիցի՝ բայց միայն պաշտօն ․ և ամենայն որ
ինչ միանգամ պիտոյ է քեզ ի պէտս եկե-
ղեցւոյ , ես տաց քեզ անհամար ․ և որպէս
բան քո տիրէ և իշխէ ի քաղաքիս յայսմիկ ,
նոյնպէս առանց նուիրակի մտցես առ իս
համարձակութեամբ յապարանս պատուոյ
թագաւորութեանս իմոյ ”։

Եւ էջ Աբգար թագաւոր յարքունա-
կան յապարանս իւր ․ և ուրախ եղեւ նա
մեծապէս հանդերձ ամենայն իշխանօք իւ-
րովք Աբդուա և Գարմաւա և Շամշա-
գրամաւ և Աբուբաւ և Միհրդաթաւ , և ա-
մենայն (35) որ միանգամ տեսին աչօք իւրեանց,
և լուան ականջօք իւրեանց ․ և ուրախու-
թեամբ սրտից իւրեանց փառաւոր առնէին
զԱստուած որ դարձոյց զմիտս նոցա առ ին-
քն ։ Եւ իբրեւ ուրացան նոքա զկրօնս հե-

թշնամութեանն յորում կային, և խոստովան լինէին յաւետարանն Քրիստոսի: Եւ շինեաց անդ Ադդէ զեկեղեցին, և մատուցանէին ի նմա զուխտս և զպատարագս իւրեանց ինքեանք և բազմութիւն քաղաքին. և անդ փառաւորէին զԱստուած զամենայն աւուրս կենաց իւրեանց:

Եւ մատուցեալ առ Ադդէ Աւիդա և Բարքաղաբա որ էին գլխաւորք և հրամանատարք քաղաքին, որք զգեցեալ էին զխոյրս արքունական, և հարցանէին զնա վասն գալստեանն Քրիստոսի զի պատմեսցէ նոցա, թէ զիա՞րդ իբրեւ զԱստուած էր նա, և երեւէր նոցա իբրեւ զմարդ. կամ ո՞րպէս կարող էիք հայել յերեսս նորա: Եւ նա զամենայն ինչ ցուցանէր և ուսուցանէր և հանգուցանէր զշարժումն մտաց նոցա վասն ամենայնի զոր տեսին աչք նոցա և լուան ականջք նոցա ի նմանէ. Եւ զամենայն ասացեալս մարգարէիցն վասն Քրիստոսի կարդէր առաջի նոցա, և ընդունէին զբանս նորա քաղցրութեամբ և հաւատովք. և ոչ ոք էր որ ընդդէմ դառնայր նորա, քանզի ոչ թողուին առաքինութիւնքն զոր առնէր նա՝ թէ ոք դիմահար լիցի նմա:

Այլ Շաւիդա և Աբեթնաբու գլխաւոր

քրմապետք քաղաքիս այսորիկ համդերձ Պե-
րոզիւ և Կանդիդաւ ընկերօք իւրեանց, իբ-
րեւ տեսին նոքա զնշանսն զոր առնէր Ադ-
դէ առաքեալ, ընթացան նոքա և խլէին
զբագինսն յորոց վերայ զոհէին Նոքրուայ և
Բէլայ Աստուածոց իւրեանց, զբագինն մեծ
որ ի մէջ քաղաքին. և աղաղակէին ասելով.
թէ "Ճշմարիտ աշակերտ է սա Վարդապե-
տին մեծի լուսաւորելոյ և փառաւորելոյ,
զորմէ լուեալք զոր միանգամ առնէր յաշխար-
հին Պաղեստինացւոց: Եւ ամենեքեան որ
հաւատացին ի Քրիստոս՝ ընդունէր զնոսա
Ադդէ առաքեալ, և մկրտէր զնոսա յանուն
Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ: Եւ որք
միանգամ՝ քարանց և փայտից երկրպագա-
նէին, գային նստէին առ ոտս նոքա ուսա-
նել և խրատել ի նմանէ, զի հեռասցին ի
գարշելեացն և ի հեթանոսական մոլորու-
թենէ: Եւ Հրեայքն գիտակք օրինացն և
մարգարէիցն՝ կտաւագործաք, և նոքա հա-
ւանեալք աշակերտեցան խոստովանելով
ի Քրիստոս", եթէ նա է որդի Աստուծոյ կեն-
դանւոյ:

Այլ ոչ Աբգար թագաւոր և ոչ
Ադդէ առաքեալ նեղէին զոք, թէ բռնա-
դատելով ոք հաւատասցէ ի Քրիստոս (36).

քանզի առանց բանուԹեան ուրուք՝ բրու-
նուԹիւն նշանացն և սքանչելեացն նե-
ղէր զնոսա հաւատալ ի նա . և սիրով ըն-
դունէին զվարդապետուԹիւն նորա ամե-
նայն աշխարհն Միջագետաց և ամենայն
կողմանքն որ շուրջ զնովաւ : Բայց Ադդէ
կերպասագործ և խոյրաքանդակ Թագաւո-
րին և Փղոտ և Բարշղամա և Բարսեմիա
հանդերձ այլովք ընկերօք իւրեանց յարե-
ցան նոքա յԱդդէ առաքեալ, և ընկալաւ
զնոսա հաղորդելով ընդ իւր ի պաշտօն և ի
վարդապետուԹիւն : Եւ իբրեւ ընԹեռ-
նուին նոքա զՀին կտակարանն և Նոր (37) .
և զմարգարէական գիրս և զգործս առաքե-
լոցն ամենայն ժողովրդեան եկեղեցւոյն . և
պատուիրէր նոցա Ադդէ զգուշանալ նոցա
յամենայնէ զի լիցին սուրբ մարմնով իւ-
րեանց և պարկեշտք հոգւով, որպէս վայե-
լէ մարդոց սրբոց, որք կան առաջի սեղա-
նոյ Տեառն : "Եղերուք, ասէ, հեռանալ ի
սուտ երդմանէ և յամբարիշտ սպանմանէ և
յանօրէն վկայուԹենէ . և որ ի շնուԹիւնս
խառնակեալ են, և ի կախարդաց յորոց մե-
րայ չլինի ողորմուԹիւն, և ի խոտրոց և ի
կիւսից և ի վոհկաց և ի բախտից և ի ծնըն-
դոց, որովք պարծին Քաղդէացիք մոլորա-

կանք , և յաստուածագիտութենէ և ի մղափա-
չէից (38) յորս յուսացեալ են յիմարեալքն : Եւ ի բաց արարէք ի ձէնջ զանկնաութիւն մեղաց և զկաշառս և զպատարագս որով պատրտաւորին արդարոց , և կուրացուցանեն զաչս առողջաց : Եւ ի պաշտամանց յոր կոչեցարուք՝ մի եւս լիցի ձեզ վաստակ , այլ զի Տէր է հանգիստ պաշտաման ձերոյ զամենայն աւուրս կենաց ձերոց : Եւ եղիցիք փոյթք ի մկրտել. և մի սիրէք զչափս աշխարհիս այսորիկ. և եղիցիք առնել դատ արդարութեան և ստուգութեան (39). և մի լինիք գայթակղութիւն կուրաց , զուցէ հայիցի ի ձեզ ակն (40) այնր որ եբաց զկոյրս՝ որպէս տեսաք մեք : Ամենայն ոք որ տեսանէ զձեզ այսուհետեւ , ի միտ առցէ՝ թէ կատարիչ էք դուք ամենայնի որոց քարոզէքդ. և ուսուցանէք ":

Եւ պաշտօնէին յեկեղեցւոջն զոր շինեաց Ադդէ առաքեալ բանիւ և հրամանաւ Աբգարու թագաւորին : Եւ էին նոքա մատակարարք թագաւորին , և նախարարաց իւրոց ի պէտս եկեղեցւոյ և ի տուրս աղքատաց : Այլ ժողովուրդ քաղաքն ժողովէին օր ըստ օրէ , և գային յաղօթս և ի պաշտօն, և շինէին ի հնոց կռատարանաց և ի նորոց

գրոց. Երրորդութիւն, ի յարութիւն և ի կենդանութիւն մեռելոց հաւատային, և զվախճանեալս իւրեանց յուսով կենդանութեան թաղէին. և զտօնս եկեղեցւոյ ի ժամանակի իւրում ուրախութեամբ կատարէին զամենայն աւուրս հանապազորդեալս ի հսկումն եկեղեցւոյ, և ողորմութիւնս առնէին առատապէս առ հիւանդս և առ աղքատս ըստ վարդապետութեան Ադդէի որ առ նոսա. և շուրջ զքաղաքաւն շինէին եկեղեցիս, և զձեռնադրութիւն քահանայութեան ընդունէին ի նմանէ քաղաքս։ Եւ քաղաքս յարեւելից ի նմանութիւն վաճառականաց յիշխանութենէ Հոռոմոց գային տեսանել զնշանսն զոր առնէր Ադդէ առաքեալ. և աշակերտեալքն ի նմանէ ընդունէին զձեռնադրութիւն քահանայութեան, և յաշխարհին իւրեանց Ասորեստանի զգաւառականս իւրեանց աշակերտէին. և տունս աղօթանոցս շինէին ի ծածուկ վասն երկիւղի այնոցիկ որք երկիրպագանէին կռակի և պատուէին զջուրս։

Բայց Ներսէհ թագաւոր Ասորեստանեայց յորժամ լուաւ զգործսն զոր առնէր Ադդէ առաքեալ, յղեաց նա առ Աբգար թագաւոր և ասէ. «Այժմ տուր ածել ինձ

զայրդ որ գնչանող առնէ առ քեզ՝ զի տե-
սից զդա և լուայց զբանս դորա, և կամ
տաւր գիտել ինձ զամենայն որ ինչ միան-
գամ արարեալ է դորա ի քաղաքիդ քում»:
Այս գրեալ Աբգարու Ներսեհի Թագա-
ւորի Ասորեստանեայց, և իմացուցեալ նմա
զամենայն պատմութիւն իրացն զոր արար
Ադդէ առաքեալ իսկզբանէ մինչեւ ցկա-
տարած, և ոչ եթող ինչ զոր ոչ իմացոյց
նմա գրով(41): Եւ իբրեւ լուաւ Ներսեհ
Թագաւոր զգրեալսն առ նա, հիացեալ զար-
մանայր, և մեծապէս ցանկութեամբ կամէր
տեսանել զնա սիրով:

Բայց Աբգար Թագաւոր, քանզի ոչ կա-
րաց անցանել ընդ Հռոմոցտաւն և երթալ
ի Պաղեստինէ, քանզի կամէր երթալ տեսա-
նել զՀրէայս յաղագս խաչելոյ նոցա զՔս,
գրեաց նա հրովարտակ և ետ տանել առ Տի-
բերիոս կայսր, յորում գրեալ էր այսպէս.
«Աբգար Թագաւոր(42) տեառն իմում Տիբե-
րեայ կայսեր՝ խնդալ: Զի գիտեմ ես թէ
ինչ ի թագաւորութենէդ քումմէ ոչ ծած-
կի, գրեցի իմացուցանել ահաւոր և մեծ
իշխանութեան քում, զի Հրեայք որ ընդ
ձեռամբ քով բնակեալ են ի գաւառս Պա-
ղեստինացւոց, ժողովեցան և խաչեցին ըզ-

Քրիստոս առանց իրիք յանցանաց և մահու՝ ի վերայ մեծամեծ երախտեացն զոր արար առ նոսա նշանս և սքանչելիս. և առնէր զօրութիւնս մեծամեծ, մինչեւ զմեռեալս անգամ յարուցանէր: Եւ ի ժամուն յորում խաչեցին զնա, արեգակն խաւարեցաւ և երկիր շարժեցաւ, և դողացեալ սասանեցան ամենայն արարածք: Եւ իբրև առ ի նոցանէն այս իրօք սպառեալ տիեզերաց, և ամենայն որդիք մարդկան (43). Եւ արդ այսուհետեւ Թագաւորութիւն քո գիտէ որ ինչ արժան է հրամայել ի վերայ ժողովրդեանն Հրէից որք զայս գործեցին»: Եւ գրեալ Տիբերեայ կայսեր ետ տանել Աբգարու Թագաւորի. և այսպէս գրեաց նմա. «Զթուղթ մտերմութեան ընկալայ և ընթերցեալ առաջի իմ զոր ինչ արարին Հրէայքն ի Խաչելեալն, նա և վասն Պիղատոսի դատաւորի. գրեալ իմացայ և ինձ Պղանոս եպարքոս վասն սորին իրաց իսկ այսոցիկ որ գրեալ է քո առ իս: Այլ պատերազմ Սպանիացւոց կայ առաջի իմ որ ապստամբեցին յինէն ի ժամանակի յայսմիկ. վասն այսորիկ ոչ կարացի խնդրել զվրէժ իրացդ այդոցիկ: Բայց պատրաստեալ եմ՝ թէ յորժամ լիցի ինձ պարապ, հրամայեցից պա-

ախտս օրինօք ի վերայ Հրէիցն անօրինաց որք անցին զօրինօք։ Եւ վասն Պիղատոսի դատաւորի զոր արարեալ էր (44) ինձ անդ, առաքեցի նմա փոխանակ, և զնա լուծի Թըշնամանօք. զի անդ նա զօրինօք և արար զկամս Հրէից, և խաչեաց զՔրիստոս յանդիման նոցա, վասն որոյ լսեմ թէ ոչ խաչի և մահու արժան էր, այլ պատուի և երկրրպագութեան և մեծարանաց ի նոցանէ արժանի էր. և տուաւել եւս զի աչօք իւրեանց տեսանէին զամենայն ինչ զոր առնէր նա։ Բայց դու ըստ մտերմութեան քում հաստատուն (կացեալ) յուխտի քում և հարց քոց որ ընդ իս՝ բարիօք արարեր որ գրեցեր առ իս"։

Եւ ընկալեալ Աբգարու Թագաւորի զԱրիստիդաս զառաքեալն առ նա ի Տիբերեայ կայսերէ, և կրկնեալ առաքեաց զնա անդէն ընծայիւք և պատուով ըստ արժանի այնմ որպէս յղեալ զնա։ Եւ գնացեալ նորա յՈւռհայ քաղաքէ, և երթեալ ի Նութիկանթա, ուր էին Եղոդիոս երկրորդ Թագաւորին։ Եւ անտի գնացեալ չոգաւ յԱրաստիկէ. քանզի անդ էր Տիբերիոս կայսր. այլ Պօպլիոս սպահէր զհրամանս որ շուրջ ըզկայսերբն էին։ Եւ պատմեալ Արիստիդեայ(45)

առաջի Տիբերեայ կայսեր վասն զօրութեան-
ցըն զոր առնէր Ադդէ առաքեալ առաջի
Աբգարու Թագաւորի ։ Եւ յորժամ եղեւ
նմա խաղաղութիւն ի պատերազմէն ,
առաքեաց սատակեաց զգլխաւորսն Հրէից
որ էին ի Պաղեստինէ բազմութիւն յոյժ
մարդկան ։ Եւ իբրեւ լուաւ Աբգար Թա-
գաւոր զայս , ուրախ եղեւ յոյժ զի ընկա-
լան Հրեայքն զպատուհասն արժանապէս ։

Եւ յետ ամաց յորժամ շինեաց Ադդէ
առաքեալ զեկեղեցին Ուռհայի , և կազ-
մեաց զնա ամենայն կազմութեամբ որպէս
վայելէր նմա ։ Եւ աշակերտեալ նորա անդ
բազմութիւն մարդկան ի քաղաքին և յայլ
եւս ի գեօղս , ի հեռաւորս և ի մերձաւորս .
շինեալ նոքա եկեղեցիս , և զարդարեալ
և կազմեալ , և կարգեալ ի նմա երիցունս և
սարկաւագունս և գրակարդացս . և ուսոյց
նոցա զկարգս պաշտաման ի ներքս և ար-
տաքս ։

Եւ յետ այսր ամենայնի կամեցաւ Ադդէ
առաքեալ գնալ ի կողմանս արեւելից և յեր-
կիրն Ասորեստանի քարոզել և ուսուցանել
և անդ զնոր վարդապետութիւնն Քրիստո-
սի ; և շինել եկեղեցիս յամենայն գաւառս
և ի գեօղս ի կողմանս արեւելից ։ Ապա կո-

չեցեալ նորա զամենայն ժողովուրդս և զիշխանս որ էին ի քաղաքին. և կարգեաց առաջի նոցա ի կարգ եպիսկոպոսութեան յիւրում տեղւոջ զԱդդէ կերպասագործ, և զՓղոտ ի կարգ երիցութեան և զԱբշղամայ ի կարգ սարկաւագութեան: Եւ մինչդեռ ժողովեալ էին առ նա նախարարք և գլխաւորք քաղաքին Բարքաղաբա որդի Զաւէի և Մարիհաբ որդի Բարշամշայ, և Անակա որդի Պաւրիկայ՝ հանդերձ այլովք եւս բազում ընկերօք իւրեանց. և ասէ ցնոսա Ադդէ առաքեալ. «Պահեք դուք, և վկայեք ինձ ամենեքին որ լսէքդ՝ թէ զամենայն ինչ որ միանգամ քարոզեցի և ուսուցի ձեզ և լուայք յինէն, այնպէս վարեցայ ի միջի ձերում. և տեսէք դուք զամենայն զգործս իմ. քանզի այսպէս պատուիրեաց մեզ Քրիստոս, զի զոր ինչ բանիւ քարոզեմք՝ զնոյն և արդեամբք կատարեսցուք առաջի ամենայն ժողովրդոց. և ըստ կարգաց և օրինաց զոր ետ Տէր մեր աշակերտացն յԵրուսաղէմ, և նոքին վարին առաքեալքն և ընկերք իմ: Այնպէս և դուք մի փոխէք ի նոցանէ, և մի խոտորիք յաջ կամ յահեակ, և մի պակասեցուցանէք ինչ ի նոցանէ, և մի յաւելուք՝ զոր օրինակ վարեցայ ես ի միջի

ձերում և ոչ խոտորեցայ յաջ կամ յահեակ։ Նա մի պակասեցուցանէք ի նոցանէ ինչ, զոր օրինակ և ես նոքօք վարեցայ ի միջի ձերում, և ոչ փոփոխեցայ ի նոցանէ յաջ կամ յահեակ, զի մի ստարացայց ի կենացն խոստացելոց՝ որ պահեալ են այնոցիկ որ կան ի պատուիրանին զոր պատուիրեաց Քրիստոս։

« Զգոյշ լերուք ի պաշտամանէդ զոր ընկալարուք. և ահիւ երկիւղիւ կեցէք կալ ի դմին, և պաշտել հանապազ։ Նա մի լինիք արհամարհողք սովորութեամբ պաշտել հեղգութեամբ ըստ կամաց, այլ մեկնութեամբ գրոց կալ ի հաւատս ճշմարտութեան (46), և օրհնութիւնն Քրիստոսի մի խափանեսցի ի բերանոց ձերոց. և սաղմոսութիւն ի ժամ աղօթից ի միտս ձեր մի մերժեսցի։ Զգոյշ լերուք ճշմարտութեան աւանդութեանդ զոր ըմբռնեցէք. և վարդապետութեանդ զոր ընկալարուք ի ժառանգութիւն կենացն զոր աւանդեմ ձեզ։ Քանզի առաջի բեմին Քրիստոսի խնդրի դա ի ձէնջ յորժամ առնի համար ընդ հովիւս և ընդ հովուապետս. և յորժամ խնդրէ (47) զարծաթ իւր ի փոխատուկանաց իւրոց տոկոսիւք և շահիւք. քանզի որդի թագաւորի է, և երթեալ է առնուլ թա-

դաւորութիւն և դառնալ և գալ, և առ-
նել համար որդւոց մարդկան. և ապա յայ-
սմ ժամանակի նմա յաղթող արդարու-
թեան և դատի զկենդանիս և զմեռեալս որ-
պէս և առաց մեզ: Այն աներևոյթ խոր-
հրդոց ձերոց ի լուսոյ նորա մի կափուցի,
զի մի բազմասցին գայթակղութիւնք ձեր
ի ճանապարհին յորում չէք գայթակղու-
թիւնք. և ոչ աղտեղի աղտ ունիցիք ի շա-
ւիղս նորա. և եղիցիք ի խնդրել զկորու-
սեալսն, և այց առնել մոլորելոց, և ուրախ
լինել ընդ գտեալսն. ցնել կաղանդս բեկե-
լոցն, և պահել անարատ զողջոյն, քանզի
ի ձեռաց ձերոց խնդրին որոջք Քրիստոսի:
Եւ մի ակն ունիք պատուոյ անցաւորի, զի
հովիւ որ ակն ունի պատուել ի հօտէ իւ-
րմէ, չարաչար կորուսանէ զխաշն իւր: Բազ-
մացի հոգաբարձութիւն ձեր առ գառինս
անմեղս, զի հրեշտակք նոցա հանապազ տե-
սանեն զերեսս Հօրն երկնաւորի. և մի լի-
նիք գայթակղութիւն առաջի կուրաց, այլ
հարթողք ճանապարհի և աներևոյթ շաւ-
ղաց ի դժուարին տեղիս ի մէջ Հրէից խա-
չահանուաց, և ի մէջ հեթանոսաց մոլորե-
լոց. քանզի ընդ այս երկուս կողմանս է
ձեզ ճշմարտութիւն հաւատոյդ զոր ունիք:

Եւ յորժամ զայս ամենայն առնէք, իբրեւ դուք լուռ կայք, տեսիլդ ձեր հեզ և ըզգաստ՝ պատերազմի փոխանակ ձեր ընդ այնոսիկ որք ատեն զճշմարտութիւն և սիրեն զստութիւն։ Եւ մի լինիք կափիչք աղքատաց առաջի մեծատանց, քանզի շատ է նոցա տանջանք չար աղքատութիւն իւրեանց։ Եւ մի խաբէք յաղտեղի խորհուրդս սատանային, զի մի մերկ գտանիցէք ի հաւատոցդ զոր զգեցայք. զի դիւրին է ուրացութիւն քան զհաւատս, զոր օրինակ դիւրին են մեղք քան արդարութիւն։

«Զգոյշ լերուք այսուհետեւ ի խաչահանուայն, և մի լինիք նոցա սիրելիք, զի մի պարտական գտանիցէք ընդ նոսա արեանն Քրիստոսի, որպէս լի են ձեռք իւրեանց։ Եւ գիտէք դուք և վկայէք թէ զամենայն ինչ զոր ասեմք և ուսուցանեմք՝ գրեալ է ի գիրս մարգարէից, և եդեալ առ նոսա. և վկայեն բանք նոցա վարդապետութեանս մերում վասն ծննդեանն Քրիստոսի և վասն դատաստանի և չարչարանաց և յարութե̃ և վերանալոյն, և միւսանգամ գալըստեանն Քրիստոսի։ Եւ ոչ իմանան, և յորժամ մեզ ընդդիմանան, ընդդէմ լինին մարգարէիցն իւրեանց. զի որպէս ի կեն-

դանութեան նոցա հալածեցին զնոսա, այն-
պէս և այժմ յետ մահուան նոցա ընդդէմ
կռուին ճշմարտութեանն որ գրեալ է ի մար-
գարէսն ։ Զգոյշ լերուք և ի հեթանոսաց
որք երկիրպագանեն արեգական և լուսնի,
և Բելայ և Նաբուայ հանդերձ այլովք որ
ինչ յերկինս և յերկրի, զոր անուանեն նո-
քա Աստուած, որք ստեղծան յԱրարչէն ի
սպաս և ի պէտս մարդկան. և չեն Աս-
տուածք բնութեամբ ։ Փախերուք այսու-
հետև ի նոցանէ, քանզի արարածոց և ըս-
տեղծուածոց պագանեն երկիր. և որպէս
ասացի յառաջագոյն թէ վասն այնորիկ եկն
Տէր յաշխարհ. զի մի եւս մոլորեսցին մարդիկ
զհետ ունայնեաց պաշտել զարարածս ։ Ա-
սըն զի անխարկելով Արարչին իւրեանց հաւա-
տատեցան և եղեն, և յորժամ կամի լու-
ծանէ և խափանէ զնոսա, և լինին իբրև
զչեղեալս. քանզի Արարիչն որ արարածս (48)
ազատեաց զորդիս մարդկան ի լծոյ ծառա-
յութեան հեթանոսութեան պաշտել զա-
րարածս ։ Քանզի գիտէք ամենեքեան, թէ
ամենայն որ թողու զԹագաւոր և պաշտէ
զծառայս նորա, չարաչար մահու դիպի ։

«Մի լինիք քննողք աներևութից և հարցող
ծածկեալ իրաց որ գրեալ է ի գիրս սուրբս

որ աւանդեցաւ ձեզ. մի՛ պարտապանք բա-
նից մարգարէից. հաւատացէք և տեսէք
զի հոգւով Աստուծոյ են ասացեալք. և որ
ուրանայ և ոչ հաւատայ բանից մարգարէ-
ից, զորդի Աստուծոյ ուրանայ, և դատա-
պարտեալ կշտամբի։ Բան լիցի ձեզ առ-
նել զայս, քանզի ճանապարհք Տեառն ուղիղ
են, և արդարք գնան ի նոսա առանց գայ-
թակղութեան, և ուրացողք գայթակղին ի
նոսա. քանզի ոչ նայեցան աներեւոյթ ա-
կամբ մտաց իւրեանց, այլ աշխատեցան
զկնի անօգուտ հարուածոց և զննաստակա-
րաց։ Յիշեցէք զգրեալսն ի մարգարէիցն
զոր քարոզեցաք ձեզ, զդատաստանս և զսը-
պառնալիս մարգարէիցն, և զբանն Տեառն
որ կիզէ զբանս նոցա. և հրով քննիչն ։ որդիք
մարդկան, վասն զի իբրեւ զհիւրս և ի գ-
պանդուխտս են որք մեծանան, և կանխեն
ի տունս իւրեանց։ Այսպէս համարեսջիք
զանձինս ձեր յաշխարհիս յայսմիկ. վասն
զի չուելոց էք աստի, և երթալ յաշխարհն
ուր երթեալ է Որդի՛ պատրաստել օթե-
ւանս այնոցիկ որք արժանի են նոցա։ Ժողո-
վուրդք աշխարհաց յորժամ կամին ուրեք եր-
թալ, զօրականք նոցա առաջի նոցա երթան
և պատրաստեն նոցա օթեւանս բուռ արժա-

նի պատուոյ նոցա ։ Այլ մեր Թագաւորն Քրիստոս ինքնին երեւեալ պատրաստել շ-Թեւանս օրհնութեան զինուորաց իւրոց ի-ջանել առ նոսա ։ Զի ոչ եթէ ընդունայն ինչ արար Աստուած զորդիս մարդկան, այլ զի լիցին երկրպագուք և փառաբանիչք աս-տուածութեան նորա և աստ և անդ՝ յա-ւիտենանս յաւիտենից ։ Զի զոր օրինակ են-քըն ոչ անցանէ, և փառաւորիչք իւր ոչ անցանեն . վասն այսորիկ և մահս իսկ այս՝ որ վարիչ է ամենայն մարդկան, և ընդ լը-ծով նորա հնազանդեալ են արդարք և մե-ղաւորք ի միասին, իբրեւ զքունս գիշերոյ համարեսցի սա յաչս ձեր ։

«Դու յիշեցէք զի յորժամ երեւեսցի նշան Որդւոյ Աստուծոյ, և խափանի մահ վարիչ մարդկան, և սատանայ որ յանցուցանէ զքա-ղումս և մարտնչի ընդ Ճշմարիտս, զի հե-ռասցին ի Ճշմարտութենէ ։ Զի զոր օրինակ հողագործն յորժամ ձեռն արկանէ զմա-Ճով, եթէ դառնայ յետս՝ ոչ ուղիղ եր-թան ակօսքն առաջի նորա . նոյնպէս և դուք որ կոչեցարուք ի շնորհս պաշտամանս այս-րիկ, զգոյշ լերուք՝ մի շաղապատիցիք յիրս աշխարհիս այսորիկ, զի գուցէ խափանիցիք յոր կոչեցեալ էք ։ Այլ զիշխանս և զդա-

տաւորս որք մերձենան ի հաւատս յոյս՝ սիրեսջիք զնոսա առանց անխտրութեան. և եթէ մեղանչեն՝ լիջիք յանդիմանել զնոսա ճշմարտութեամբ. զի դուք ցուցջիք նոցա զհամարձակութիւն ուղղութեան ձերոյ, և նոքա խրատեսցին, զի այլ մի ևս վարեսցին ըստ կամս իւրեանց: Այս իսկ հոգաբարձութիւն լիցի ձեզ զամենայն աւուրս կենաց ձերոց, զի զհետ գործոց բարեաց եղիջիք ընթանալ, զի այլքն ևս յորդորեսցին ի նոյն: Քանզի այսու դատանեն որդիք մարդկան զկեանս իւրեանց առաջի Աստուծոյ: Բայց զգիրս զոր ընթեռնուցուք յեկեղեցւոջ ժողովրդեան առաջի, զԱրարածս և զՄարգարէս և զԱւետարանն և զԹուղթս Պաւղոսի, զոր ետ բերել Սիմոն Պետրոսի Հռոմ քաղաքէ, և զգործս առաքելոցն զոր ետ բերել մեզ Յովհաննէս որդին Զեբեդեայ Եփեսոս քաղաքէ (49). զայն իսկ զայս գիրս ընթերցջիք յեկեղեցւոջ Քրիստոսի. և այլ աւելի քան զնոսա մի ընթեռնուցուք, քանզի չիք այլ ինչ յորում գրեալ է ճշմարտութիւն, բայց ի գիրս զոր ընկալարուք հաւատով յոր կոչեցարուք:

Եւ տէրս մեր Աբգար Թագաւոր և պատուական նախարարք իւր՝ որք լուան զոր

ինչ խօսեցայ ես այսօր առաջի ձեր , բաւա-
կան են լինել ինձ վկայք ի կեանս իմ և ի
մահուան . զի զվարդապետութիւն Տեառն
քարոզեցի առաջի ամենեցուն յայտնապէս ,
և պատրաստեալ եմ և այլոց ես քարոզել .
և աւելի քան զբանն Տեառն ոչ ինչ ասացայ
յաշխարհիս յայսմիկ . քանզի բանն նորա
եղեւ ինձ բաւական , որով մեծացայ ես ,
և մեծացուցի զբազումս : Ո՛ ի նա եղիցի
ինձ ուղեկից ի ճանապարհս յոր երթամ
ի քարոզութիւն ճշմարտութեան աւետա-
րանին և ի վարդապետութիւն հեթանոսաց
առաջի Քրիստոսի , որ առաքեացն զիս գնալ
ի ամս վասն փրկութեան հեթանոսաց և
հաստատութեան եկեղեցւոյ :

" Բայց զայս գիտէք դուք , զի ասացի
ձեզ յառաջագոյն՝ թէ ոգիք ամենայն մարդ-
կան որ ելանեն ի մարմնոյ աստի՝ ոչ մեռա-
նին , այլ կան մնան կենդանի . և են նո-
ցա օթեւանքն և բնակութիւնք ի հանդե-
տեան . քանզի ոչ խառնին միաք և ոչ
ուղւոցն , վասն զի նկարագիր անմահին Աս-
տուծոյ նկարեալ է ի նմա : Ո՛ ի ոչ եթէ իբ-
րեւ զմարմին է նա անզգայ , որ ոչ իմանայ
զապականութիւն տգեղութեան որ զնովաւ-
անկանի . բայց զվարձ հատուցմանն ոչ կա-

րէ ընդունել առանց նորա. զի ոչ եթէ հոգւոյն միայն է վաստակն, այլ և մարմնոյն յորում բնակեալն էր Աստուած (50)։ Ո՛չ ըղ-ջանան անդ յանօգուտ. այլ դուք որ քրրիստոնեայքդ էք և անուն նորա փառաւորեալ և թագաւորեալ է ի վերայ ձեր, ինքն ուղղէ զձեզ ի ճանապարհս ճշմարտութեան երթալ ձեզ ընդ նա, և ժամանել և հասանել խոստացելոց բարեաց նորա (51), որ պահի այնոցիկ որ ոչ խոտորին ի պատուիրանաց նորա, այլ կան և մնան ի կոչմանն յոր կոչեցան ի Տեառնէ ”։

Եւ զայս ասացեալ նորա՝ լռեալ դադարեաց Ադդէ առաքեալ ի խօսելոյ։ Տուեալ պատասխանի Ադդէի կերպասագործի Թագաւորին և Փղոսայ և Աբշղամայ հանդերձ այլովք ընկերօք իւրեանց, և ասեն ցԱդդէ առաքեալ. “Վկայէ Քրիստոս որ առաքեաց զքեզ առ մեզ, և ուսուցեր մեզ զհաւատս ճշմարտութեան, և ստացաք զկեանս սրբութեան. զի որպէս լուաք ի քէն և ընկալաք ի ժամանակս զամենայն զոր եղեր դու ընդ մեզ, նոյնպէս կամք և մնամք զամենայն աւուրս կենաց մերոց. և յերկրպագութենէ կռոցն արարելոց և հաստատելոց՝ որոց երկիրպագանէին հարքն մեր, հրաժարիմք և

ուրանամք, և ընդ Հրեայս խաչահանուանս ոչ հաղորդիմք. ոչ Թողումք, այլ առնումք և-լանեմք յաշխարհէս յայսմանէ: Եւ յաւուրն Տեառն առաջի բեմին արդար դատաստա-նին, անդ դարձուսցուք քեզ զժառանգու-թիւնս զայս որպէս ասացեր մեզ»:

Իբրև ասացան բանքս այսոքիկ, յա-րուցեալ ինքն Աբգար Թագաւոր և գլ-խաւորք իւր և ամենայն նախարարք իւրոյ Թագաւորութեանն, և չոգաւ յապարանս իւր: Եւ տրտմեալ էին ամենեքեան յաղա-գս մեկնելոյ նորա և գնալոյ ի նոցանէ: Եւ ետ տանել նմա Աբգար Թագաւոր կա-րասի բազում. և տեսեալ զայն Ադդէի, յղեաց առ Աբգար և ասէ. «Եթէ ոչ ի դա-լստեան իմում առի ինչ ի քէն, և ոչ առնեմ յիս սուտ զպատուէրն Քրիստոսի որ ասա-ցըն ցմեզ, թէ մի առնուցուք ինչ յումե-քէ, և մի ստանայք ինչ յաշխարհիս յայս-միկ»: Եւ յետ այլ ևս երից աւուրց յոր-ժամ խօսեցաւ զայս ամենայն սուրբ առա-քեալն Թադէոս, և լուաւ նա, և ընկալաւ զվկայութիւն վարդապետութեան և քարո-զութեան իւրոյ ի պաշտօնակցաց իւրոց ա-ռաջի ամենայն նախարարաց և իշխանաց Թագաւորին, համբարձեալ զձեռս իւր ի

մեր՝ եկեալ յաղօթս, և օրհնեաց զնոսա. և ելեալ գնաց ընդ արեւելս։ Եւ յուղարկեցին զնա ամենայն բազմութիւն մարդկանն. և էր օրն հինգշաբաթի, որ օր չորեքտասան էր մարերի ամսոյ։ Եւ սուգ մեծ և տրտմութիւն յոյժ եղեւ ամենայն քաղաքին վասն մեկնելոյ նորա ի նոցանէ. և ոչ եթէ քրիստոնեայքն միայն լային, այլ և հեթանոսք և Հրեայք որ էին ի քաղաքին։ Այլ և Աբգար թագաւոր առաւել քան զամենայն ոք տրտմեալ էր վասն գնալոյն նորա. նա և պէտք թագաւորութեանն իւրոյ էին ի տրտմութեան մեծի. և անարգեաց (Աբգար) և եթող զպատիւ թագաւորութեան իւրոյ, և ոչ եկեր և ոչ արբ յաւուր յայնմիկ. և բազում մեծաւ և արտասուօք յուղարկեաց զնա հանդերձ ամենայն եկեղեցեաւն։ Եւ ամենայն բնակչաց քաղաքին տեսեալ զնա՝ զարմացեալ էին, թէ որքան վշտացեալ էր վասն նորա, զոր օրինակ յուղարկէ ոք զմեռեալ։ Եւ բազում պատուով և մեծարանօք և տրտմութեամբ յուղարկէին զնա։ Եւ նա ել գնաց ընդ արեւելս քարոզել զաւետարանն Քրիստոսի։

Բայց Ադդէ որ աշակերտեցաւ նմա, եղեւ առաջնորդ և հրամանատար և ժառան-

դաւոր աթոռոյն Ադդէի առաքելոյ ի ձեռ֊
նադրութիւն քահանայութեան, զոր ըն֊
կալաւ նա ի նմանէ առաջի ամենայն ուրուք.
և հնազանդեցան ամենայն Միջագետք և ա֊
մենայն կողմանք արեւելից ընդ ձեռամբ
Ադդէի ըստ վարդապետութեանն զոր ընկա֊
լաւ յԱդդէէ առաքելոյ։ Քանզի յայնմ ժաման֊
նակի մայր քաղաքաց եղեւ Ուռհա ա֊
մենայն աշխարհին կողմանցն արեւելից, վա֊
սն զի ի նմա նախ քարոզեցաւ աւետարա֊
նըն Քրիստոսի, և անդ յառաջ շինեցաւ
եկեղեցի, և անտի ընդունէին զձեռնա֊
դրութիւն եպիսկոպոսութեան ամենայն
արեւելք. և հնազանդէին Ադդէի առաքե֊
լոյ, և լսէին նմա հնազանդութեամբ, և
ընդունէին զբան նորա ախորժելով, և լի֊
նէին հաւատարիմ և բարիոք ժառանգա֊
ւորք վարդապետութեան առաքելոյն Քրիս֊
տոսի. և արծաթ և ոսկի յումեքէ ոչ առ֊
նուին, և ընծայք մեծատանց առ նա ոչ
մտանէին, այլ փոխանակ ոսկւոյ և արծա֊
թոյ՝ հաւատացելովք և սրբօք մեծացուցա֊
նէր զեկեղեցին Քրիստոսի։ Նոյն և գլուխք
արանց և կանանց չքեղք և զգաստք սուրբք
և պարկեշտ էին, և մենաւորեալ բնակէին
ցնծութեամբ առանց աղտոյ. և արթունք

և զուարթունք և շքեղք ի պաշտաման, և հոգաբարձուք առ աղքատս և տեսողք հիւանդաց։ Եւ գնացք նոցա էին վայելչութեամբ առաջի տեսողաց իւրեանց. և վարք նոցա գովութեամբ զարդարեալ էին յարտաքնոց, մինչև քուրմք անգամ Նաբուայ և Բելայ պատուէին և մեծարէին զնոսա յամենայն ժամ։ Պատուականք էին տեսլեամբք և համարձակք բանիւք և ճշմարիտք խօսիւք և ազատք բարոյիւք. և ընդ լծով ագահութեան ոչ հնազանդէին, և ընդ մեղադրութեամբ ոչ անկանէին, և ընդ երկիւղիւ ոչ փախէին. և ամենայն ոք որ տեսանէր զնոսա, ընթանայր ընդ առաջ նոցա զի հարցանիցէ զողջունէ նոցա սիրով սիրալէս։ Քանզի և տեսիլ նոցա խաղաղութիւն սփռէր ի վերայ տեսողաց, և իբրև զուռկան տարածեալ էին բանք ողջունի իւրեանց ի վերայ ապստամբողաց։ Եւ իբրև մտանէին ի գաւիթս սրբութեան և ճշմարտութեան, զի ոչ ոք էր որ տեսանէր զնոսա և խորշէր և դարձէր ի նոցանէ, քանզի ոչ ինչ անարժան և անպատեհ գործս գործէին, և վասն այսորիկ զուարթերեսք էին ի քարոզութիւն վարդապետութեան իւրեանց առ ամենայն ոք. զի զոր ինչ առէին և ուսուցանէին և

խրատէին զայլս, ինքեանք գործովք ցուցանէին յանձինս իւրեանց ։ Եւ լաւքն յորժամ տեսանէին թէ ըստ խօսս իւրեանց գործք իւրեանց էին, և զոր բանիւք ասէին՝ զնոյն և արդեամբ կատարէին, ապա այնուհետեւ առանց աշխատութեան և առանց երկբ պատճառանաց աշակերտէին նոցա, մեծապէս հնազանդութեամբ խոստովանելով ի Քրիստոս, և փառաւորէին զԱստուած և գոհանային գնծութեամբ՝ որ դարձոյց զնոսա ի սնոտի մոլորութենէ ի լուսաւորութիւն աւետարանին ։

Եւ յետ ամաց ինչ մեռաւ Աբգար թագաւոր, և եկաց ի թագաւորութեանն մի յորդւոց իւրոց, այր չար և ապստամբող, և ամենայն անօրէնութեամբ, որ ատեայր ըզխաղաղութիւն և ոչ ընդունէր զվարդապետութիւն քարոզութեան աւետարանին ։ Յղեաց առ Ադդէ եպիսկոպոս մինչդեռ նստէր յեկեղեցւոջն և խօսէր զպատգամս գրոց սրբոց յականջս ժողովրդեանն, և ասէ. «Արա ինձ խոյրս ոսկեղէնս զոր օրինակ առնէիր յառաջ հարցն իմոց»։ Եւ ոչ առ յանձն Ադդէ. առաքեաց անդրէն և ասէ. «Ոչ թողում ես զպաշտօնն Քրիստոսի որ աւանդեցաւ ինձ յաշակերտէն Քրիստոսի

Ադդէէ առաքելոյ, և առնեմ խոյրս անիրաւութեան »։ Եւ իբրեւ ետես նա եթէ ոչ հաւանի նա կատարել զկամս նորա, յղեաց խորտակեաց զորունս նորա մինչդեռ նստէր յեկեղեցւոջն և թարգմանէր ի մէջ ժողովրդեանն։ Եւ ի մեռանելն իւրում երդմնեցոյց զՓղոտ և զԱբշղամայ, եթէ աստէն իսկ ի տանս յայսմիկ ուր մեռանիմս վասն ճշմարտութեան սորա՝ դիք զիս, և աստէն թաղեցէք։ Եւ որպէս երդմնեցոյց՝ նոյնպէս արարին. թաղեցին զնա անդէն ի ներքոյ քան զմիջի դուռն եկեղեցւոյն, ի միջի ընդ արս և ընդ կանայս։ Եւ եղեւ սուգ մեծ և դառն յեկեղեցւոջն և յամենայն քաղաքին վասն իւրացն եղելոց, որպէս եղեւ սուգ և տրտմութիւն յորժամ վախճանեցաւ բարիոք վկայութեամբ Ադդէ առաքեալ վարդապետն նորա ի ձեռաց ամբարշտաց ի կողմանս արեւելից։ Եւ քանզի իբրեւ խորտակեցին զոտս նորա՝ վաղվաղակի մեռաւ փութապէս, և ոչ ժամանեաց ձեռնադրել զՓղոտ, ապա գնացեալ Փղոտ յԱնտիոք, և ընկալեալ անդ զձեռնադրութիւն քահանայութեան ի Սերապիոնէ եպիսկոպոսէ. որ ինքն իսկ Սերապիոն ընկալաւ զձեռնադրութիւն ի Զեփիրինոսէ ե-

պիսկոպոսէ ի Հռոմ քաղաքէ, որոյ ընկալեալ զքահանայութիւն ի Սիմոնէ վիմէ՝ որ ընկալաւ ի Տեառնէ. և եղեւ եպիսկոպոս ի Հռոմ քաղաքի ամս քսան և հինգ, յաւուրս Տիբերիոս կայսեր, որոյ թագաւորեալ անդ ամս երեքտասան (52), որպէս են աւուրք թագաւորաց: Եւ թագաւորութեան նորա Աբգարու թագաւորի և ամենայն թագաւորաց զամենայն ինչ զոր հրամայեն թագաւորքն, և զամենայն որ ինչ միանգամ լինի խօսք առաջի նոցա, գրի և դնի ի տունս յիշատակաց: Այնպէս և յՈւռհա քաղաքի Ղաբուբնա որդի Անակայ, որդւոյ Աբդաշարադայ դպրի թագաւորին, դրեաց զամենայն ինչ որ միանգամ իրք եղեն Ադդէի առաքելոյ ի սկզբանէ մինչեւ ի կատարած, միաբանութեամբ ձեռնարկելով և Անանեայ հաւատարմի թագաւորին. և եդին ի տուն յիշատակաց քարտիսից, ուր դնէին մատեանք և օրէնք արքունականք. և որք գնեն և վաճառեն, և գրին ի միջի նոցա մուրհակք հաստատութեան, անդ պահին հաստատութեամբ (53):



# ԳԻՒՏ ԽԱՉԻՆ ԵՐՈՒՍԱՂԷՄ

Ի վերջաւորութեան Թղթոյ սուրբ Ղեռուբնայն, վասն առաջին Գիւտի Խաչին ի ձեռն Թագուհւոյն Պատրոնիկեայ (1).

---

Ես արդ պատմեցից ձեզ վասն սուրբ Խաչին, որ ի ձեռն հաւատացելոց՝ որ իբրեւ զձեզդ էին, երեւեցաւ սքանչելի զօրութեամբ, սուրբ Խաչն Քրիստոսի։ Կին ոմն Պատրոնիկէ անուն Կղօդիայ կայսեր, որ երկրորդ էր ի Հռոմ յետ Տիբերեայ կայսեր. և եղեւ երթալ Կղօդիայ կայսեր ի պատերազմ ի Սպանիա, որք ապստամբեցին ի նմանէ։ Ընդ ժամանակս ընդ այնոսիկ էր Պետրոս ի Հռովմ քաղաքի, որ էր մի յաշակերտացն Քրիստոսի. տեսեալ կնոջն Պատրոնիկեայ զնշանսն և զսքանչելիսն զոր առնէր Պետրոս յանուն Յիսուսի Քրիստոսի, զարմանայր և հաւատայր Աստուած, և արհամարհէր զկուռս և զնոսա պաշտամունսն՝ որոց երկիրպագանէր։ Եւ հաւատայր Աստուած Հայր մեր և ի Տէր մեր

---

(1) Զտարբերութիւնս այլ և այլ օրինակացն զանց առնեմք՝ բաց ի կարեւորագունից ոմանց.

Յիսուս Քրիստոս և ի Հոգին սուրբ. և ընդունէր մկրտութիւն, և փառաւոր առանէր զԱստուած ընդ քրիստոնեայսն. և պատուէր և մեծարէր զսուրբ զառաքեալն Պետրոս, և յօժարութեամբ լսէր նմա։

Եւ յետ այսորիկ կամեցաւ երթալ յԵրուսաղէմ և տեսանել զտեղիսն զայնոսիկ յորս չարչարեցաւ Քրիստոս և արար անդ զօրութիւնս։ Եւ փութապէս գնաց ի Հռոմէ և եկն յԵրուսաղէմ ինքն և երեք որդիքն իւր և երկու դստերքն, և մին էր կոյս. և այլ ևս բազմութիւն ընդ իւր, որպէս թագաւորի մեծափառութեամբ եկեալ։ Եւ ի մտանելն նորա յԵրուսաղէմ՝ ելին ընդ առաջ նորա ամենայն քաղաքն, և ընկալան զնա մեծաւ պատուով որպէս զդշխոյ և զտիկին Հռոմայեցւոց աշխարհին։

Եւ Յակոբոս էր առաջնորդ եկեղեցւոյն Երուսաղէմի. իբրև լուաւ եթէ քրիստոնեական հաւատովն է, եկն առ թագուհին որ էր յապարանսն Հերովդի։ Եւ իբրև ետես տիկինն զՅակոբոս՝ ուրախ եղեւ, և ընկալաւ զնա մեծաւ պատուով որպէս զՊետրոս. և պատմեաց Յակոբոս ըզզօրութիւնսն և զբժշկութիւնսն Քրիստոսի՝ տիկնոջն, և զտեղիսն ուր յայտնեաց զքան

չեմք Քրիստոս որդին Աստուծոյ։ Նա ասէ Թադուհին ցՅակովբոս. «Ցոյց ինձ զԳող-գոթայն ուր խաչեցաւ Քրիստոս ի Հրէի-ցն, և զխաչափայտն յորմէ կախեցաւ, և զգերեզմանն նորա»։ Նա ասէ Յակովբոս. «Այդ ոչ է ընդ մերով իշխանութեամբ, այլ Հրէ-այքն իշխեն, և ոչ տան թոյլ երթալ մեզ ի Գողգոթայն և ի Յարութիւնն. և ոչ ընդ-խաչն ցուցանեն մեզ. այլ և հալածեն եւս զմեզ, և ի բանտ և ի կապանս արկանեն, և ի նեղութիւնս բազումս նեղեն զմեզ՝ զի մի քարոզեսցուք զաւետարանն փրկու-թեան յանուն Քրիստոսի որով փրկեցան աշխարհք»։

Իբրև լուաւ զայս Թադուհին, հրա-մայեաց կոչել զգլխաւորս Հրէիցն, զքա-հանայսն և զհրամանատարսն, զԱնիա որ-դին Անանիայ, և զԳոդողիա որդի Կայի-ափայ, և զՅուդա որդի Աբդաստաղամայ (1). և ածին զնոսա։ Նա ասէ ցնոսա տիկինն. «Տուք ի ձեռս Յակովբայ և ընկերաց նորա զԳող-գոթայն և զԳերեզմանն և զխաչափայտն Քրիստոսի. և մի ոք իշխեսցէ արգելուլ զդոսա ըստ պաշտամանն իւրեանց սպասա-

(1) Ոմանք՝ Ագրոստողոմայ։

ւորել տեղեացն սրբութեանդ ։ Եւ զայս ասացեալ ցնոսա յարուցեալ ինքն և որդիք իւր և դստերք, և որ ընդ նմայն էին՝ տեսանել զտեղիսն սրբութեան, և յանձն առնել Յակոբայ և որ ընդ նմայն էին ։

Եւ եկն եմուտ ի Գերեզմանն հանդերձ ուստերօք և դստերօք իւրովք ։ Եւ եգիտ երիս խաչս, և ոչ գիտէր թէ ո՛ր իցէ Քրիստոսին ։ Ի նոյն ժամայն անկաւ կոյս դուստր նորա և եհան զոգին առանց պատճառանաց իրիք ։ Իբրեւ ետես դշխոյն եթէ մեռաւ դուստրն իւր առանց ախտի, ամբարձեալ զաչս իւր և ծունր կրկնեալ կայր յաղօթս և ասէր. "Քրիստոս Աստուած որ եւտուր զանձն քո ի մահ փոխանակ ամենայն արարածոց, և ելեր ի խաչ ի տեղւոջս յայսմիկ վասն փրկութեան ամենայն մարդկան. և մեռար և եդար ի գերեզմանիս յայսմիկ՝ զի կեցուսցես զամենեսեան որ իցեն ի գերեզմանս. և յարեար որպէս զԱստուած կենդանարար յամենայնի, և յարութեամբդ քո յարուցեր զբազումս ընդ քեզ ։ Եւ արդ տէր Աստուած ամենայնի լուիցեն հեթանոսք և Հրեայք խաչահանուք, և ամբնհար լինիցին նոքա ամենեքեան ինձ, և հեթանոսք մոլորեալք կռոցն պաշտօնեայք և

երկրպագուք դրօշելոյն՝ յորոց դարձայ եւ յաստուածգիտութիւն, այժմ ուրախա-ցին այսպէս առնելով զիս և ասացեն. Այս եղեւ նմա յաղագս Թողլոյ նմա զաս-տուածն, և խոստովանելոյ զՔրիստոս զոր ոչ գիտէր, և երթեալ պատուեալ զտեղի խաչելութեան նորա և զգերեզմանն որպէս զԱստուածոյ։ Աղաչեմ զքեզ Քրիստոս փր-կիչ աշխարհի, լուր պաղատանաց աղախնոյ քո վասն փառաւորեալ անուանդ քո սրբոյ. մի արգելուր զշնորհս քաղցրութեան քո վասն անարժանութեան իմոյ, որ փոխանակ Արարչիդ պաշտեցի զարարածս. այլ վասն փառաւորեալ անուանդ քո սրբոյ ցոյց զս-քանչելիս քո այժմ, և արա առ մեզ զնշան բարի, զի մի հայհոյեսցի անունն քո սուրբ ի Թշնամեաց խաչի քո։ Քրիստոս փրկիչ իմ, մի անտես առներ զյուսացեալս և զապա-ւինեալս ի քեզ»։ Եւ բազում հառաչանօք և արտասուօք գոչէր առ Տէր՝ զի արասցէ այցելութիւն որպէս զԱստուած։

Մատուցեալ առ դշխոյն երեք որդին իւր և ասէ. «Լուր ինձ մայր իմ զոր ա-սեմս. ինձ այսպէս Թուի ի խորհուրդս իմ, եթէ մահս որ յանկարծահաս եղեւ քեռս իմոյ, ոչ եթէ ընդունայն ինչ եղեւ, այլ

նորաքանչ և հրաշալի զարմանս զմտաւ ած-
ցես, զի փառաւորեացի մեծ անուն Քը-
րիստոսի, և ոչ եթէ հայհոյեացի վասն մահ-
ուան սորա որպէս կարծեն չարքն։ Ահաւա-
սիկ մնամք ի գերեզմանս, և երիս խաչս
տեսամք, և ոչ է յայտ եթէ ո՛ր է Քրիստո-
սին՝ յորոյ վերայ խաչեցաւն և եհեղ զպա-
րիւնն իւր սուրբ, և ո՛ր աւազակացն որ
ընդ Քրիստոսի խաչեցան ի Հրէից։ Արդ
այժմ մահուամբ քեռս իմոյ յայտնեսցի զօ-
րութիւն սուրբ խաչին՝ յորում խաչեցաւ
Քրիստոս Աստուած։ Քանզի ոչ անփոյթ
առնէ Քրիստոս վասն այնոցիկ որ հաւա-
տան ի նա և խնդրեն զշնորհս ողորմութեան
նորա։ Յայնժամ ընկալաւ թագուհին զպա-
տացեալն յորդւոյն իւրմէ, և հաւատաց ե-
թէ ի վերին շնորհացն ազդեցաւ նմա, և
փոքր ինչ սթափեցաւ ի դառն սգոյն։ Ա-
մատուցեալ առ զմի ի խաչափայտիցն և եդ
ի վերայ մեռելոյ դստերն իւրոյ. և եկաց
յաղօթս առ Տէր և ասէ. «Քրիստոս փր-
կիչ աշխարհի, որ ցուցեր զզօրութիւնս և
զսքանչելիս ի տեղւոջս յայսմիկ, որպէս լը-
ւաք և հաւատացաք ի քեզ։ Յիսուս փր-
կիչ և կեցուցիչ, եթէ քո է խաչս այս և ի
սմա բեւեռեցար և տարածեցեր զբազուկս

քո զամենադօր , յայտնեաս զմեծութիւն զօ-
րութեան քո . որ առեր մարմին ի սրբոյ
կուսէն Մարիամայ , և եղեր մարդ . և խա-
չեցար և չարչարեցար և եդար ի գերեզմա-
նիս յայսմիկ . և յերրորդ աւուր յարեար և
յարութիւն պարգևեցեր ազգի մարդկան.
այժմ կենդանացո զդուստրս իմ յանուն
քո Խաչի , և փառաւորեսցիս Տէր ի դառնալ
հոգւոյ սորա ի սմա . և ամաչեսցեն Հրեայք
խաչահանուք և հեթանոսք խաւարեալք
ի ճշմարիտ լուսոյդ , և հաւատացեալք օրհ-
նեսցեն զքեզ Քրիստոս Աստուած որ տէրդ
ես երկնի և երկրի ” : Եւ ասացեալ զաղօ-
թս զայս՝ լուռ լինէր իբրև ժամ մի , և ոչ
ինչ երևէր զօրութիւն Խաչին: Եւ ի բաց ա-
ռեալ զայն՝ դնէր զմիւսն , և դարձեալ կայր
յաղօթս առ Տէր հառաչանօք և արտասուօք
և ասէր . “Տէր Աստուած որ յակնարկելդ քո
արարան արարածք ամենայն՝ երևելիք և ա-
ներևոյթք . և հրամանաւ քո հաստատեալ
կան ամենայն եղեալքս առ ի քէն : Աստուած
յաւիտենական որ եկիր ի փրկել զտիեզերս
ամենայն կամաւոր խաչելութեամբ քո , և
կամիս զկեանս ամենայն մարդկան զի կեց-
ցեն և ի գիտութիւն ճշմարտութեան եկես-
ցեն . զի դու ես մարդասէր փրկիչ : Քրիս-

տոս յոյս հաւատացելոց՝ Թէ քո է խաչս այս յորոյ վերայ հեղեր զարիւն քո, յայտնեա զզօրութիւն քո, և կենդանացո զդուստր իմ. որ բազում մեռելոց յարութիւն պարգեւեցեր քոց հաւատացելոց վասն անուանդ քոյ սրբոյ, և լիցի ուրախութիւն հաւատացելոց ի ձեռն երեման սքանչելեաց քոց, և նկուն լիցին ատելիք Ճշմարտութեանն Հրեայք և հեթանոսք՝ որ ոչ հաւատացին զալատեան քո և կամաւոր չարչարանաց և մեծամեծ սքանչելեաց քոց զոր սովոր ես առնել. այժմ երեւեսցի ի դստերս իմոյ. և մեք արժանի լիցուք փառաւորել զքեզ Քրիստոս Աստուած ամենայն հաւատացելոց քո ի քեզ. յոյս և ապաւէն և օգնական. և Ճշմարտեալ սիրով ընդ ամենայն հաւատացելովս հանցուք զօրհնութիւն ամենազօր տէրութեանդ ։ Եւ տատացեալ նորա զայն՝ լուռ եկաց իբրեւ ժամս երկուս, և ոչինչ ցուցանէր խաչն զօրութիւն սքանչելեաց որպէս յուսայրն ։ Եւ յետ այսր ամենայնի ի բաց առեալ և զայն եւս խաչ ի դստերէն իւրմէ, և առեալ զերրորդն դնէր ի վերայ նորա. և մինչ կամէր ամբառնալ զաչս իւր և հայել յերկինս և բանալ զբերան իւր և կալ յաղօթս առ

Աստուած որդւոյն իւրով հանդերձ, նոյն ժամայն ի մերձենալ խաչին իսկ և իսկ ի դիւա-կըն՝ յական թօթափել յանկարծակի դուստր նորա յարեաւ ի մեռելոց. և յարուցեալ փառաւորէր և օրհնէր զԱստուած, որ խա-չիւն իւրով կեցոյց զնա։

Երբեւ տեսեալ տիկինն եթէ ՚ի զօրութենէ խաչին յարեաւ դուստր նորա ՚ի մեռելոց, զարհուրեալ հիացաւ յոյժ, և անկեալ ՚ի վե-րայ երեսաց իւրոց՝ երկիրպագանէր և համ-բուրէր զսուրբ Խաչն Քրիստոսի. և գոհա-նայր ի վերայ անպատում սքանչելեացն՝ զոր եցոյց Տէր ի ձեռն զօրութեան սուրբ Խա-չին. և փառաւորէր ուստերօք և դստերօք իւրովք զՏէր ամենակալ. և առաւել եւս հաստատէին ի հաւատս՝ որ ի տէր մեր Յիսուս Քրիստոս և ի սուրբ Խաչ նորին. և թէ արդա-րև Յիսուս Քրիստոս է որդի Աստուծոյ, և այս՝ Խաչ նորա. որ և կենագործելոց է զհաւա-տացեալս իւր սովաւ, և ապաւէն և օգնա-կան և պահապան հաւատացելոց և յաղ-թութեան նշան ընդդէմ երեւելի և աներ-ևոյթ թշնամւոյն, որ հակառակին ճշմար-տութեան աւանդին որ ի Քրիստոս Յի-սուս։ Ասէ ցթագուհին որդին իւր. «Եթէ այս այսպէս ոչ էր լեալ, ոչ էր յայտնեալ զօ-

րութիւն խաչին Քրիստոսի, և ոչնչութիւն աւազակաց խաչիցն. ահա այսուհետև սուրբ խաչն Քրիստոսի մեծասցի, և մեք ուրախասցուք ի սքանչելի զօրութիւն նորա, և Քրիստոս Աստուած սովաւ փառաւորեսցի այժմ և յաւիտեանս ։

Եւ ապա զխաչն Քրիստոսի եւ զՅակովբոս զի զգուշութբ պահեսցի և պատուեսցի. և հրամայեաց շինել եկեղեցի ի Գողգոթա ուր խաչեցաւն Քրիստոս, և ի գերեզմանին՝ ուր թաղեցաւն. և զամենայն սուրբ տեղիսն պատուեաց շինուածովք, զի լինիցին ժողովրդանոցք պաշտաման՝ յորս օրհնեսցի Քրիստոս Աստուած ի տուէ և ի գիշերի։ Եւ տեսեալ դշխոյին զամենայն քաղաքն ժողովեալ ի տեսիլ մեծի սքանչելեացն, հրամայեաց դատերըն իւրոյ՝ յորոյ վերայ զօրութիւն սուրբ խաչին ցուցաւ, զի առանց սքօղելոյ երեւեսցի ժողովրդեանն՝ որ կամէին տեսանել, որպէս զի տեսցեն զնա և փառաւորեսցեն զԱստուած ի վերայ անպատում սքանչելեացն՝ զոր ի նմա եցոյց ի ձեռն սուրբ խաչին, զի հաւատացեալքն ուրախասցին, և թշնամիք խաչին և ատելիքն Քրիստոսի յամօթ լիցին։

Բայց ժողովք Հրէից և հեթանոսաց ուրացողաց յոյժ տրտմեցան ընդ հրաշագոր-

ծութիւնն որ եղեւ ի գալստեանն հաւատացեալ դշխոյին, զի տեսանէին զբազումս որ հաւատային ՚ի Տէր. և համբաւ նշանացըն յամենայն տեղիս պատմէր, և մեծանայր անուն Տեառն, և փառաւոր լինէր ի վերայ զարմանագործութեանցն: Եւ եղեւ խաղաղութիւն (1) մեծ ամենայն եկեղեցւոյն Երուսաղէմի, և ի քաղաքսն որ շուրջ զնովաւ էին. և լուեալ զայս տային օրհնութիւն Աստուծոյ:

Եւ յետ այսր ամենայնի ել Դշխոյն յԵրուսաղեմէ իւրովքն ամենեքումբք՝ զի երթիցէ ի Հռոմ. և ուր հասանէր ի քաղաքս՝ գային ամենեքեան ի տեսութիւն դստերն իւրոյ յարուցելոյ ՚ի մեռելոց. և ուսանէին իսքանչելեացն երեւումն ի ձեռն սուրբ խաչին Քրիստոսի (2): Եւ եմուտ ի Հռոմ դշխոյն, և պատմեաց Կղօդիայ կայսեր զամենայն եղեալսն յանուն Քրիստոսի ի ձեռն սուրբ խաչին, որ երեւեցաւ դստերբ նորա կուսի յԵրուսաղէմ՝ մեռանել և յառնել: Եւ ըն

(1) Յիշէ և Ղուկաս զխաղաղութիւն եկեղեցւոյս այսր ժամանակի ի Գործս Առաքելոցն Գլ. Թ. 31. "Բայց եկեղեցին ընդ ամենայն Հրէաստան և ի Սամարիա և ի Գալիլեա ունէր խաղաղութիւն, շինեալ և երթեալ զհետ երկիւղի Տեառն",

(2) Ահա՛ք՝ տեսանէին զսքանչելեաց խաչին Քրիստոսի:

ւեալ Կայսերն փառաւոր առնէր զԱստուած . և հրամայեաց զամենայն Հրեայսն հալածել ի Հռոմայ ։ Եւ արդ պատմէր Պիղոսին և Պետրոսի՝ զսքանչելիսն որ եղեւ , նաեւ ամենեցուն զզօրութիւն Խաչին Քրիստոսի ։ Եւ ամենեցուն լուեալ փառաւորեցին զԱստուած ։

Արդ՝ զայս ամենայն որ պատմեցաւ՝ ի միտ առէք , և հաւատացէք ի Քրիստոս , և ունիցիք զսուրբ Խաչն կեցուցիչ և ապաւէն ամենայն հաւատացելոց որ յուսան ի Քրիստոս ։ Եւ Յակովբոս որ էր գլուխ եկեղեցւոյն Երուսաղէմի , որ էր հաւատարիմ այր ի Տէր , գրեաց զայս ամենայն զոր ետես ինքն , և ծանոյց առաքելոցն որ էին քարոզք Քրիստոսի և ընկերք Յակովբայ . նըմանապէս և նոքա քարոզեն և ցուցանեն զզօրութիւնն և զսքանչելիսն որ ի Քրիստոս ։ Եւ զկնի մահուանն Կղօդեայ և Պատրոնիկեայ Հրեայքն գրգռեալ ի վերայ հաւատացելոցն , և յարուցեալ հալածանս՝ փախստական արարին զհաւատացեալսն . ըսպանին և զՅակովբոս զեղբայրն Տեառն , և առեալ թաղեցին զսուրբ Խաչն յերկիր ի ներքոյ գաւազանին՝ անյայտ ի մարդկանէ ։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. Ի Թուական Սելեւկիացւոց, որ համապատասխանէ գրեթէ 32 ամաց ծննդեանն Քրիստոսի: Զայն Թուական ի գործ ածէին և Եգիպտացիք, որ սկսանի ի Թագաւորութենէն Սելեւկիացւոց:

2. Ի բնագիրն եղեալ էր յայտնի սխալմամբ՝ Լագաւորութեան:

3. Մանովայ անուանէին Ասորիք զհայրն Աբգարու, որ է Արշամն ըստ Մովսէսի Խորենացւոյ, որպէս տեսցի ի ստորեւ և այսու անուանակոչութեամբս:

4. Սխալեալ համարի և աստ, զոր փոքր մի յետոյ ուղղէ Մարիհաբ կոչելով, որ էր ըստ Խորենացւոյ և ըստ Յովհաննու կաթողիկոսի՝ բդեաշխ Աղձնեաց: Իսկ Շամշագրամ նահապետ էր Ապահունեաց:

5. Սաբինոս է Մարինոսն՝ որդի Եւստորգեայ, ըստ Խորենացւոյն. Բ. 30:

6. Ընթերցիր զգլուխ Ե. համար. 14—36 Յովհաննու աւետարանին:

7. Զոր Խորենացին Փրկէն կոչէ, աստ Բժիշկ ասէ, զոր Վիկտոր Լանկլուա յարմարագոյն համարի ի բերան հեթանոս պատմագրին:

8. Արժանի դիտողութեան է աստ պատասխանին զոր տայ Քրիստոս Թղթոյ Աբգարու արքային, ոչ գրով՛ այլ բանիւ լոկով, որ հաւատարմագոյն եւս է՝ ակնարկեալ մօտ ի հանգամանս կենաց և վարուց Փրկչին։ Իսկ Խորենացին զի ասէ գրով առաքեալ զպատասխանին ի ձեռն Թովմայի առաքելոյ, զորոյ և զպատճէնն ի մէջ բերէ, տայ մեզ կարծել՝ եթէ բաց ի յիշատակարանացն Ղերուբնայ՝ էին նորա և այլ աղբիւրք յորոց առ ժողովեաց զդէպս իւրաց այսր ժամանակի, որպէս հաւաստի ցուցանեն համառօտ իմաստք պատասխանւոյն Մարինոսի առ Աբգար (Բ. 30.) և նամակքն զորս ընդ Տիբերեայ կայսեր Թղթեաց, յորս գտանին պարագայք ինչ իրաց՝ զորովք զանց առնէ անուանեալ պատմագիրս մեր այս։

9. Ադդէ կամ ըստ այլոց Ադէ անուանէ զսուրբ Առաքեալն Թադէոս, Թերեւս ըստ Ասորւոյն հնչման, յորմէ մակաբերի՝ եթէ և աշակերտ իւր կերպասագործն Ադդէ որ յաջորդեաց զնա, յիւր անուն կոչեցաւ։

10. Մովսէս Խորենացի, յորմէ առեալ և Յովհաննէս կաթողիկոս՝ զՏուբիա ասեն լինել ի տոհմէն Բագրատունեաց, և պաշ-

տեւել զհրէութիւն ։

11. Առաքեայ բայն ունի աստ զնշանակութիւն ազդելոյ կամ ծանուցանելոյ, որպէս և ի ստորեւ յերկուս տեղիս ։

12. Կրկնութիւն համարին բառքս ըէ որոշէս ։

13. Աստի սկսանի բնագիրն կայսերական դրատան Փարիզու (ըստ գաղղ. թարգմանութեան.) պատմել զգիւտ Խաչին՝ որ եղեւ ձեռամբ Պատրոնիկեայ տիկնոջն Կղօդիայ կայսեր ։

14. Ի բնագրին՝ անդրոյր ։

15. Զնախադրութիւնն Ջէրջ, որ պակասէր, յաւելաք առ ի պարզութիւն մտացն ։

16. Գաղղ. թարգմանութիւնն զանց առնէ ի մէջ բերել զքարոզութիւնս սուրբ առաքելոյն ։

17. Ի բնագրին՝ արոնեափից ։

18. Ի բնագրին՝ Մծոլնեանցն ։

19. Թուի մոռացեալ նախագիրն փոխանակ գրելոյ՝ չիմապոռլեան և ի զօրոլեան փառաորէ որբէ մարդոյ ։ Իսկ բառքդ մարմինք նորա ծէրանէք, եթէ չգուցեն վրիպակք գրչի, մեկնութեան են կարօտ ։

20. Նշանաւոր է վարդապետութիւն դաւանութեանս առաջնոյ և առաքելական

դարուն, այն է ասել՝ Աստուած խաչեալ մարդ-կեղէն մարմնովն, որում հետեւի ցարդ ուղղափառ եկեղեցին Հայաստանեայց, որ և յերգս սրբասացութեան իւրում երգէ ուղղափառ մտօք:

21. Թուի և աստ թերութիւն իմաստից լինել, կամ այլայլութիւն բառից:

22. Ընթերցիր լերին*:

23. Սանիր կամ Սանայիր ըստ անուանելոյ Փիւնիկեցւոց և Ամորհացւոց՝ է լեառնն Հերմոնի, կամ լաւ եւս՝ շղթայք լերանցն Հերմոնի յայնկոյս Յորդանանու, մերձ յաղբերակունս նորա: Յայնոսիկ կողմանց ասէ լինել հայրենեօք սուրբ Աւաքեալս. իսկ առ հնագոյն պատմիչս ոչ ուրեք գտանի անուն հայրենեաց սրբոյն, զոր ոմանք կարծեօք ասացին զնա Անտիոքացի լինել:

24. Ի մեծ Ճառընտրին, համար 1. հատ. Ա. գլուխ. հէ, առեալ ի սոյն գրոց Թադէի, յաւելուածով իմն, և ուրեք փոփոխութեամբ բառից և կազմութեամբ իմաստից խօսի վասն յարութեան մեռելոց, զոր արժան համարիմք աստէն դնել. «Արդ հոգիք ամենայն մարդկան որ ելանեն ի մարմնոյ աստի, է նոցա օթեւանք և բնակութիւն ի հանգստեան. քանզի ոչ խառնանին միաբ

և ուշ ոգւոյն, քանզի նկարագիր անմահին Աստուծոյ նկարագրեալ է ի նոսա. զի ոչ է-կերեւ զմարմին անզգայ որ ոչ իմանայ զապականութիւն ոգեղութեան որ զնովաւ անկանի. բայց վարձ հատուցման ոչ կարէ ընդունել առանց նորա. քանզի ոչ եթէ հոգւոյն միայն է վաստակն, այլ և մարմնոյն՝ որ բնակեալն է ի նմա: Բայց վասն զի եկն Տէր մեր յաշխարհ, զի ուսուցանիցէ և յայտնեսցէ մեզ, եթէ կատարած աշխարհի լինի, և յարութիւն մեռելոց մարդկան. և յայնմ աւուր նկարին վարք իւրեանց, և լինին մարմինք նոցա որպէս մագաղաթ լի գրով ճշմարտութեան: Եւ ոչ ոք է որ ոչ գիտէ զդպրութիւն. քանզի ամենայն ոք ընթեռնու զգիր դպրութեան իւրոյ. և զհամար գործոց իւրոց ի մատունս ձեռաց իւրոց ունիցի, որպէս զի ոգէսք և ոսկերք և գիտունք տեղեակք լինին դպրութեան նորա. յորում ոչ ոք ասիցէ ցընկեր իւր, թէ եկ ընթերցիր ինձ զայս. վասն զի մի վարդապետութիւն և մի ուսումն թագաւորէ ի վերայ ամենայն մարդկան: Քանզի այժմ խորհրդովք ձեռովք պատճառէք զանգիտութիւն, բայց ի ճշմարտութենէս ոչ կարէք պատճառել. յասել մարդարէին՝

եթէ, Եղիցին ամենեքեան ուսեալք յԱս-տուծոյ » :

25. Ի բնագրին՝ նոյա , թէպէտ և այնպէս մթին են իմաստք :

26. Զայսոսիկ անուանս կռոց յիշէ և Խորենացին ի Բ. 3 :

27. Ի բնագրին՝ էն :

28. Հաւատացեալք՝ Քրիստոնեայ կոչե-ցան յամի ծննդեան Քրիստոսի 42 , ութ ամաւ յետոյ քան զքարոզութիւնն Թադէի. ուստի յայտ է՝ եթէ նա ինքն հեղինակն յե-տոյ մուծեալ է ի գիրս իւր զանուանակոչու-թիւնս որ տուաւ հասարակ հաւատացելոց. և կամ թարգմանիչք յայս բառ հեղին ըստ ընդհանուր սովորութեան : Այսու ան-ուանակոչութեամբ վարի և Խորենացին ի թղթին Տիբերեայ առ Աբգար :

29. Ի բնագրին՝ նմա :

30. Ի բնագրին՝ Երկրէ :

31. Ի բնագրին՝ Նորա :

32. Թուի վրիպակ գրչի , փոխանակ գը-րելոյ Եմոմ : Իսկ յասելն՝ յղեալ առ իս , չէ պարտ իմանալ զթուղթ , այլ զլուր կամ զծանօթութիւն զանձնէն , զոր վերագոյն առաքեաց ասաց . այն է ծանոյց , որպէս յետա-գայ բանիւքն պարզաբանէ :

33. Ի բագրին՝ ստուգելութեամբ, թերեւս ընթեռնլի է՝ ստոյգ եղելութեամբ ։

34. Մովսէս Խորենացի կոչէ զնա Անանուն. իսկ զկինն Աբգարու՝ Հեղինէ, զոր բնագիրն Դերուբնայ Շղամաթէ կոչէ, այն է Շողոմէ կամ Սողոմէ ։

35. Ի բնագրին՝ Մինհըրտաբըա 'ղամենայն ։

36. Ճշմարիտ նկարագիր քրիստոսական եկեղեցւոյն հիմնեալ ի վերայ ազատութեան կամաց և խղճի մտաց մարդկան ։

37. Եթէ նոր կտակարանաւ պարտիմք իմանալ զչորեսին աւետարանսն, համարի այս՝ որպէս ի յառաջաբանին ասացաք, վրիպակ ժամանակագրական, քանզի որ քան զայլ աւետարանիչսն կանխեաց գրել զՔրիստոսէ՝ Մատթէոս, սակայն և նա փոքր ինչ յետոյ էր քան զվկայութիւն Ադդէի ։ Նոյնպէս եթէ ասելովս զգործս առաքելոց՝ պարտիմք իմանալ զերկրորդ գիրսն Ղուկասու, դարձեալ սխալի ընդդէմ կարգի ժամանակաց, զի յոյժ յետոյ քան զնահատակութիւն Թադդէի գրեցաւ այն ։ Այն օրինակ են և զորս յերեսս 50, ծանօ 49, խօսի ըղթղթոցն Պօղոսի, և ըստ ամենայն հաւանութեան՝ յետոյ մուծան յասորական բնագիրսն առ ի զգուշութիւն հաւատացելոց ։

րոյ, զի Հրեայք որ բնակեալ են ի գաւառս Պաղեստինացւոց, ժողովեալ խաչեցին զՔրիստոս առանց իրիք յանցանաց՝ ի վերայ մեծամեծ երախտեացն զոր արար առ նոսա նշանս և սքանչելիս, մինչև զմեռեալս անգամ յարուցանել: Եւ գիտեա՝ զի զօրութիւնքս այս ոչ են սոսկ մարդոյ՝ այլ Աստուծոյ. զի և ի ժամանակին յորում խաչեցինն զնա՝ արեգակն խաւարեցաւ, և երկիր շարժեալ տատանեցաւ. և ինքն յետ երից աւուրց յարեաւ ի մեռելոց, և երեւեցաւ բազմաց: Եւ այժմ յամենայն տեղիս անուն նորա ի ձեռն աշակերտաց նորա սքանչելիս մեծամեծս կատարէ. որ և առ իս ինքեան եցոյց յայտնապէս: Եւ արդ այսուհետև տէրութիւնդ քո գիտէ. որ ինչ արժանն է հրամայել ի վերայ ժողովրդեան Հրէից որք զայն գործեցին, և գրել ընդ ամենայն տիեզերս զի երկիրպագեսցեն Քրիստոսի իբրև ճշմարիտ Աստուծոյ: Ողջ լեր”:

## Պատասխանի թղթոյն Աբգարու ի Տիբերեայ:

“Տիբերիոս կայսր Հռովմայեցւոց, Աբգարու թագաւորի Հայոց խնդալ: — Զթուղթ մտերմութեանդ քո ընթերցան

առաջի իմ, վասն որոյ շնորհակալութիւն ի մէնջ քեզ հասցէ։ Թէպէտ և ի բազմաց մեր լուեալ զայդ յառաջագոյն, եցոյց և Պիղատոս ստուգապէս վասն նշանացն նորա, և եթէ յետ յարութեանն ի մեռելոց հաւատարիմ եղեւ բազմաց՝ թէ Աստուած է։ Վասն որոյ և ես կամեցայ առնել զայդ՝ զոր և դու խորհեցար։ Այլ քանզի սովորութիւն է Հռովմայեցւոց՝ Աստուած ի հրամանէ թագաւորի միայնոյ ոչ նստուցանել, մինչեւ ոչ փորձեալ քննեսցի նա ի Սինգղիտոսէն, վասն որոյ և իմ յայտնեալ զբանս զայս Սինգղիտոսին, արհամարհեաց Սինգղիտոսն՝ զի ոչ քննեցաւ նա յառաջագոյն ի սմանէ։ Այլ մեք տուաք հրաման ամենայն ումեք որում և հաճոյ թուեսցի Յիսուս՝ ընկալցին զնա ընդ Աստուածս, և մահ այնոցիկ սպառնացեալ որ չարախօս կայցեն ըզքրիստոնէից։ Իսկ վասն ժողովրդեանն Հըրէից՝ որ յանդգնեցան խաչել զնա, զորմէ լսեմ թէ ոչ արժանի խաչի էր նա և մահու, այլ պատուի և երկրպագութեան, յորժամ առից պարապումն ի պատերազմէս Սպանիացւոց ապստամբողաց յինէն, քըննեալ հատուցից նոցա զարժանն »։

## Օրինակ Թղթոյն Աբգարու առ Տիբեր։

"Աբգար արքայ Հայոց. տեառն իմում Տիբերի կայսեր Հռովմայեցւոց խնդալ։ — Զ.Թուղթ գրեալ ըստ արժանի քոյոյ տէրութեանդ՝ տեսի, եւ ընդ հրաման մտածութեանդ քո ուրախացայ. եւ եթէ ոչ ցանուցուս ինձ, գործ Միգդիտոսիդ յոյժ այպանելի է. քանզի առ դոսա իքըննութենէ մարդկան տուեալ լինի աստուածութիւն։ Եւ արդ այսուհետեւ եթէ ոչ լինիցի հաճոյ Աստուածն մարդոյն, Աստուած լինել նա ոչ կարէ. և իբրեւ յայսմանէ մարդոյն արժան է քաւել զԱստուածըն։ Բայց քեզ տեառն իմոյ հաճոյ թըւեսցի առաքել զայլ ոք յԵրուսաղէմ փոխանակ Պիղատոսի, զի լուծցի նա անարգանօք յիշխանութենէն յոր կարգեցեր զնա, վասն զի արար զկամս Հրէիցն, և խաչեաց զՔրիստոս ի տարապարտուց առանց քոյոյ հրամանի։ Ողջ լինել քեզ ըղձամ"։ Բ. 33. Ի յետագիրս։

Արժանի դիտողութեան համարի աստ, զի ի բնագրին Ղերուբնայ, և կամ որ լաւ եւս է ասել՝ ի հայ Թարգմանութեանս նորին ոչ ինչ բանք լինին ոչ ի Թղթին Աբ-

գաւորն և ոչ Տիբերեայ վասն տալոյ զՔրիստոս պաշտել ի Հռովմայեցւոց, և կամ կարգել զնա ի շարս Աստուածոց։ Դարձեալ՝ Մովսէս Խորենացի երկրորդ իմն թուղթ Աբգարու ի մէջ բերէ ի պատասխանի գրոյն Տիբերեայ, զոր բնագիրս մեր չունի. վասն որոյ հաստատին կարծիք մեր՝ եթէ ունէր Խորենացի ի ձեռին և այլ աղբիւրս պատմութեանց բաց ի գրոցս Ղերուբնայ։

Ի թղթին Տիբերեայ՝ ուր յիշատակի Ար-ղանոս եպարքոս, Վիկտոր Մանկլոս վրիպակ գրչի համարելով զայն, և ի բնագրէ Խորենացւոյն ուղղելով կամի ընթեռնուլ զԱղանոսդ՝ Պիղատոս. այլ որովհետև և Պիղատոս դատաւոր յանուանէ յիշատակի մանաւորապէս, և այն ոչ իբրև ազգարար իրացն եղելոց, այլ առաւել իբրև ամբաստանեալ յայլմէ, վասն որոյ և իբրև առանձին ոք լինել բաց ի Պիղատոսէ՝ պաշտօնի եպարքոսութեան կացեալ յերկրին Պաղեստինացւոց։ Հաստատի այս և նորին իսկ բանիւք Տիբերեայ, որ զՊիղատոսէ խօսելով ասէ, եթէ «առաքեցի նմա փոխանակ, և զնա բուծի թշնամանօք. զի անց նա զօրէնօք, և արար զկամս Հրէից»։ Հաստատի եւս երկրորդ թղթովն Աբգարու ի պա-

տառխանի կայսեր, յորմէ խնդրէ զայլ ոք առաքել փոխանակ Պիղատոսի, և զնա լուծանել անարգանօք ։

43. Ի պարբերութեանս բառք ինչ պակասին, որոց վասն մնայ առանց իմաստից ։ Գաղղ. Թարգմանութիւնն ունի. Et si ce phénomène avait duré encore tout, l'univers et tous les fils des hommes auraieut été anéantis. « Եթէ պատըքիկ նշանք (երեւոյթք բնութեան) տեւէին տակաւին, տիեզերք համօրէն և որդիք մարդկան սպառեալ բնաջինջ լինէին » ։

44. Եթէ չգուցէ վրիպակ գրչի, իմանի զօրութեամբ՝ զոր արարեալ էր իմ անդ դատաւոր. և կամ ընթեռնուլ՝ առաքեալ էր իմ ։ Իսկ Գաղղ. Թարգմանութիւնն ունի Quant à ce que le juge Pilate a fait dans tes domains. « Իսկ վասըն Պիղատոսի դատաւորի որ արար յերկրի իշխանութեան քում » ։ Որ է յայտնի վրիպակ Թարգմանութեան և կամ խուրոյ բնագրին ։

45. Նոյն է՝ զոր վերագոյն Արտեգիտակեցեալ, զոր ի գաղղիերէնին Aratice Թարգմանէ ։

46. Ի բնագրին՝ ճշմարտութեամբք ։

47. Սուտ մոռացեալ բայս խնդրէ, զոր յաւելաք ։

48. Նշխարս և առս պակասին բառք ։

49. Տես վերագոյն ի ծանօթութեան 37։

50. Ի բնագրին զԱստուած։

51. Իմա կամ փոխանակ գրելոյ նորա, և կամ՝ բարեացն որ խօսեցաւ նոցա։

52. Միջին այս պարբերութիւն առանց երկբայութեան համարի յետոյ յաւելեալ, յորում գործի անգիտաբար վրիպակք ժամանակագրականք, դնել զՍրապիոն ժամանակակից Փղոտայ, զի յետոյ եկաց նա յաժ յԱթոռն Անտիոքայ. նոյնպէս և Զեփրինոս եպիսկոպոսն Հռովմայ, որ նստաւ յԱթոռն ի կատարած կոյս երկրորդի դարու։

53. Բնագիրն Փարիզու յաւելու ի վախճանին՝ Ամէն. պահին հաստատութեամբ առանց արհամարհանաց։



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՀԱՄԱՌՕՏ

# ԱՂՈՒԱՆԻՑ ԵՐԿՐԻ

ՅՕՐԻՆԵԱԼ

Ի Տ․ ԵՍԱՅԻ ԱՂՈՒԱՆԻՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԷ

ՀԱՍԱՆ ՋԱԼԱԼԵԱՆՑ



Ի ՏՊԱՐԱՆԻ

ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԱԹՈՌՈՅ Ս․ ՅԱԿՈԲԵԱՆՑ

ՅԵՐՈՒՍԱՂԷՄ

1868—ՌՅԺԷ

Ի ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏՈՒԹԵԱՆ

Տ. Տ. ԳԷՈՐԳԱՅ

ԱՍՏՈՒԱԾԸՆՏԻՐ ՎԵՀԱՓԱՌ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

ՀՐԱՄԱՆԱՒ

Տ. Տ. ԵՍԱՅԵԱՅ ՍՐԲԱԶԱՆ

ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՒ ՊԱՏՐԻԱՐՔԻ Ս. ԵՐՈՒՍԱՂԷՄԱՅ

ԵՒ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍՈՅ

Տ. Տ. ՊՕՂՈՍԻ ՍՐԲԱԶԱՆ

ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Եսայի Կաթողիկոս, որոյ անուն թերեւս գտանիցի ի գաւազանագիրս Կաթողիկոսաց տանն Աղուանից, այլ մեք ի ձեռն առաջիկայ երկասիրութեանս եւ ծանօթանամք անուան նորին, էր՝ որպէս յայտ է, ի հնագոյն յերեւելի եւ յիշխանագուն տոհմէն Հասան Ջալալեանց, որոյ կենցաղ եւ գործք նշանաւորք՝ ունին զփառաւոր տեղի յազգային պատմութեանս։ Նստաւ սա յԱթոռն Մետրապօլտութեան Գանձասարայ, (որոյ գահակալք կոչէին Կաթողիկոս Աղուանից.) յառաջնում քառորդի ութեւտասներորդ դարու. սակայն չունիմք ի ձեռին կարեւոր եւ ստոյգ ծանօթութիւնս զվարուց իւրոց եւ զկենաց. այլ այս ճշմարիտ է՝ զի ընդ այլոց նախորդացն իւրոց համեմատեալ զսա, գտանեմք ըստ բաւականին տեղեակ ազգային դպրութեան եւ նախանձաւոր գործոց բարեաց, մանաւանդ եթէ վառեալ ի սէր ազգին իւրոյ, զգուշաւոր եւ փոյթ ի զարթուցանել ի համազգայինսն զոգի արիութեան եւ զյիշատակ քաջագործութեանց նախնեաց եւ զզինուորութեանցն՝ որ ընդդէմ թշնամեաց եկեղեցւոյն իւրեանց եւ ազգայնութեան։

Այսքէնկ Թափառանցի իւր նշխարին ի Հակիրճ տեսութեան անդ զոր տայ մեզ պատմագիրս յառաջիկայ երկասիրութեան իւրում. որ թէպէտ վերջացեալ գտանի դասական և ի կանոնաւոր ոճոյ նախնի դպրութեան մերոյ, և ուրեք ստորին յոյժ յասացուածս իւր և ի բացատրութիւնս իմաստից, մինչև գաւառական բառս և օտարազգիս եւս առնուլ ի կիր. սակայն կարեւորութիւնն զոր տամք աշխատութեան առնս՝ են պատմական տեղեկութիւնք անցից վերջին դարուս, որ գործեցան ի մէջ Պարսից և աշխարհին Վրաց և Աղուանից, և յարաբերութիւնքն որ ընդ ազգային պատմութեանս են, որք և ձգին մինչև ցամն Տեառն 1723։

Առաջին անգամ տպեալ է մատեանս ի Շուշի քաղաքի, յամի 1839, հրամանաւ և ծախիւք Բաղդասարայ Հասան Ջալալեանց Արքեպիսկոպոսի և Ասպետի Մետրապօլտի և վիճակաւոր Առաջնորդի Ղարաբաղու և այլոց։



# ՅԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Ամենայն յառաջին՝ մանաւանդ թէ յոլովք ի նախնին կորովամիտ իմաստուն և քաջ նա և ի սուրբ՝ արանց յառաջ բերեալ իւրաքանչիւր դարուց և ժամանակաց զեղեալ եղեալ իրաց պատմութիւնս հոգեւորաց և մարմնաւորաց, շարադրեալ թողին ինքեանց առյապայս եկելոց ի յիշատակ և ի զգուշութիւն։ Որոց զանուանս նոցին ոմանց արանց լուեալ մեր շարագրեցաք աստ սակս պատճառաց երկուց։ Նախ՝ զի դիտաւորութիւն բանիս առ պատմութիւնս ներկայիս է՝ յորում եմքս. որոյ նիւթ բանից և շարադրութիւն բառից ի նոցին ուսեալ գոլով գրոց, մի լիցուք ապերախտ նոցին երախտեաց՝ արտաքոյ թողլով զանուանս արանցն երախտաւորաց։ Եւ երկրորդ՝ ի նոցանէ թէպէտ ոմանք ի յազգէ Հրէից էին և ի հեթանոսաց, և ոմանք յայլազգ քրիստոնէից՝ այսինքն Յունաց, Ասորւոց և Լատինաց, և այլք ի մերս Հայոց ազգէ. սակայն բանք և վկայութիւնք նոցա ոչ է թարց շնորհաց ամենազօր Հոգւոյն սրբոյ Աստուծոյ. որոյ այսօր տնտեսութիւնս է ի գլուխ յոբելեանի պենտեկոստէիս։ Ընդ որոց և

եւ յուսամ ընդունել կաթիլ մի յառատ պարգեւաց այնմ պարգեւատուին՝ որ ոչ զՀրեայս եւ զՀեթանոսս խտրէ, եւ ոչ զմի-թովլպացիս որոշէ, եւ ոչ ի դաւանողաց իւրոց արժանաւորաց եւ յանարժանից խորշի. որպէս զի շնորհիւ Նորին յաւարտ հասից տըկար մտօք սկսելոյ տրակիս:

Արդ՝ որպէս վերագոյնդ խոստացայ զանուանս առաջնոցն, են այսոքիկ. Նախ՝ Ափրիկանոս, Յեսով. Հեքեսիպոս, եւ Յովսեպոս Հրեայք. եւ Նոննոս կրօնաւոր, Եւսեբիոս, եւ Զոսիմոս, Փաւստոս Բիւզանդ, եւ Զենոբ յունաց. Սոկրատ, եւ Թէոդորիտոս, Յովհաննէս՝ Ոսկեբերան, եւ Թէոդորոս. Յովհաննէս Եփեսացի. եւ Կորայ իմաստուն, Յակոբ Ուրհայեցի, Դիոնեսիոս սարկաւագ, եւ Իգնատիոս եպիսկոպոս Անտիոքայ, Սլիւայ երէց, եւ Յովհաննէս ի Քեսնոյ. Դիոնէսիոս Սալիբայ որդի, եւ Միխայէլ պատրիարք Ասորւոց:

Իսկ ի մէնջ եւ յազգէս Հայոց՝ կորովին Ագաթանգեղոս, եւ այրն Աստուծոյ Մովսէս Խորենացի, Եղիշէ սուրբ վարդապետ, եւ Ղազար Փարպեցի, Թովմա վարդապետ Արծրունի, եւ Շապուհ Բագրատունի, Յովհաննէս կաթողիկոս Հայոց, եւ

Մովսէս Աղուանից պատմագիր Կաղանկա-
տուացի, Ուխտանէս եպիսկոպոս Ուռհայու.
Ստեփաննոս վարդապետ Ասողնիկ, Արիստա-
կէս վարդապետ Լաստիվերտցի. Մատ-
թէոս վանաց երէց Ուռհայու. Սամուէլ
քահանայ կաթուղիկէին Անւոյ. Վանական
վարդապետ Տաւուշոյ, և Կիրակոս վարդա-
պետ և Վարդան նորին աշակերտք: Ապա
հուսկ վերջին և հուպ ի յետինս Առաքել
վարդապետ Դաւրիժեցի, որ ունի պատմու-
թիւնս ամաց իբրեւ վաթսուն և հնգից.
սկսեալ ի ՌԾ թուէն մինչեւ ի ՌՃԺԷ թուին
հասեալ դադարէ: Արդ՝ եթէ գոն այլ
ինչ պատմութիւնք ի մէջ մեր և կամ այլ
ազգաց, թողաք զայն ի գիտունս նոցին., և
զայս միայն յիշեցաք զոր ի գիրս մեր գտաք:

Եւ արդ՝ սոցին աստ յիշեցելոց արանց
ոմանք, սկսեալ որ առաւել հմտագոյնքն էին,
ի Ստեղծողէն զարարածս, և ի նախկինն մար-
դոյն Ադամայ, և ոճով իւն անցանելով ընդ-
դարս և ընդ ժամանակս, և աւարտեալ
մինչեւ ի յինքեանց իսկ կեանս: Իսկ ոմանք
ի նշանաւոր դարուց և ի քաջազօր թագա-
ւորաց և ի սքանչելի արանց սկիզբն եդեալ
են զբանս իւրեանց, և այսպէս իւրաց ինչ ե-
ղելոց մեծամեծաց և փոքունց. և այլ եւս

ի բռնակալաց արանց և ի գոռոզաց տիրո-
ղաց, և ընդ հաւատոյս Քրիստոսի և եկե-
ղեցւոյ նորին մրցողաց, և հերձուածողաց
ամբարշտաց, և նեղութեանց ժամանակաց։
Նաեւ խաղաղարար և բարեպաշտ Թագա-
ւորաց և իշխանաց, աշխարհի շինութեանց
և եկեղեցւոյ բարեկարգութեանց, և Թշնա-
մեաց յաղթութեանց. եւս շարայարեալ
են ընդ պատմութիւնս զանազանս և հիա-
ցուցանողս արժանիս լսելեաց, և հաստա-
տեալ են մինչ առ իւրաքանչիւր ժամանակս՝
առ ի խրատ և յօգուտ և ի զգաստութիւն
յետագայից։ Որպէս զի բարեաց արանց
նախանձաւորքն ընդ բարիսն գովեսցին, և
չարքն և արհամարհեալքն ընդ նախկին չա-
րեացն արհամարհեալք արտաքսեսցին։

Այլ արդ՝ եղբարք իմ սիրեցեալք ի տէր,
քանզի նոքա ի ժամանակս տէրութեան քրի-
ստոնէից թագաւորաց և իշխանաց բա-
րեպաշտից գոլով, և կամ թէ ընդ իշխա-
նութեամբ այլազգեաց բռնաւորաց ան-
կեալ, որք թէպէտ թշնամիք օրինաց են, այլ
կամին շինութիւն և խաղաղութիւն աշխար-
հի և յոլովութիւն ռամկաց վասն օգտի իւ-
րեանց, այնքան աղէտս և կսկիծ և տառա-
պանս, և աղաղակ, և ամբաստանութիւնս

տառնջանօք հանդերձ գրեալ են ի պատմու-
թիւնս իւրեանց, որ և քաջայայտ իսկ է ձե-
րում իմաստութեանդ։ Այս ո՞րչափ և քա-
նիցս և քանիցպատիկ պարտիմք մեք ող-
բալ և հառաչել և աւաղել զողորմելի կեա-
նըս մեր. և երկոքումբք ձեռօք հարկանել
զգլուխս, և վա՜յ կարդալ զկորստեամբք մե-
րովք, որ ոչ միայն ի թագաւորաց մերոց և
յիշխանաց զրկեցաք, այլ և յայլազգի զօրա-
ղաց և ի բռնակալաց, որ ակամայ կամօք
հաճեալ և հնազանդեալ եմք ընդ տէրու-
թեամբ նոցին (մնալ) բազում ժամանակս։
Որք թէպէտ հակառակ էին եկեղեցւոյ և օ-
րինաց մերոց, այլ ոչ իսպառ զխմամարտէին։
Իսկ թէպէտ կեղեքէին, և կողոպտէին ըզ-
կեանս մեր, այլ ապահով և խաղաղ եւս
պահէին զմեզ յարտաքին և յօտար թշնա-
մեաց և յաւարչաց։ Ընդոսին եւս եբարձ
տէր Աստուած մեր յերեսաց իւրոց և ի
մէնջ. եթէ վասն անկշռելի և անչափելի և
անհամար մեղաց մերոց էր որում յաւէտ
արժանի եմք՝ զոր կրեմքս, և եթէ յաղագս
չափուց իւրեանց լրմանն՝ որ անցեալ էին
քան զչափ բնութեանս մարդկան և օրէ-
նադրին իւրեանց յափշտակութեամբ, զրկո-
ղութեամբ, կաշառառութեամբ, պղծագոր-

ծուլութեամբ, և ամենայն իրօք չարեօք, թէր-
եւս արժանին տարաւ ի տեղի հատուցման,
որ չեղելոց զգործոյն քննէ, և զչգոյն իբ-
րեւ զգոյ կոչէ. նմա միայնոյ է գիտելի, և
կարող է հատուցանել զհատուցումն նոցա
նոցին:

Եւ դուք որով եղանակաւ և կամիք
ընտրեցէք. բայց ի մեզ եհաս և կատարե-
ցաւ հրաման Տեառն մերոյ և փրկչին՝ թէ
և տարադէպ է ինքեան, եթէ՝ « Հարից զհո-
վիւն և ցրուեսցի հօտն »: Այսպէս եղեւ
և մեզ. զի յընտանի հաւատակից հովուաց
վաղ ուրեմն էաք զրկեալք, այժմ յօտարա-
հաւատ և յայլակրօն տերանց եւս մեկուսա-
ցաք. և եղաք իբրեւ նաւաբեկ ոք որ ի մէջ
կոհակացեալ ալեաց ծովուն տարաբերի ու-
տիւք և ձեռօք, և ոչ ուստեքէ լինի փր-
կութիւն: Քանզի և ես այսպէս գիտեմ՝
թէ ի հնումն և թէ ի նորումս սուրբ հայ-
քըն որքան ողբք և սուգ զոր ասացեալ և
գրեալ են, զայն նախագիտութեամբ վասն
այսր ժամանակիս է, և վասն մեր՝ և ոչ իւ-
րեանց: Վասն որոյ ոչ կարեմ տալ լռու-
թեան. թէպէտ հայիմ և չափեմ զկարո-
ղութիւն անձին իմոյ, և տեսանեմ յոյժ տը-
կար և անիմաստ և յոռի քան զամենայն

մանկունս և զպաշտօնեայս եկեղեցւոյ, և քան զուսումնակիցս իմ և ընկերս ըստ ժամանակիս, մանաւանդ թէ մեղօք զառածեալ և թշուառական կենօք զբաղեալս. սակայն հայիմ ի քաջսն և ի գիտունսն քան զիս, զի լռեալ յայսմ ամենայնէ անփոյթ առնեն, և հարկանելոյ սրտիս ոչ տոկալ այսմ անտանելի աղետիս, այլ յուսացեալ յամենազօրավն Տեառն և յառատաձիր պարգևահոգւոյն՝ որ խլից լսել տայ, համերց խօսել, և արժանաւոր աղօթիւք Տիրուհւոյ Կուսին, և Կարապետին սրբոյ, և ի լոյս ածողին զմեզ բազմերախտ հօրն մերոյ մեծին Գրիգորի, և ամենայն սրբոց և եղբարց սրբանուէրից, արկի զանձն իմ ի հոգս գործոյս այսորիկ մտատանջի, փառահացեալ ոչ թէ ի կարողութիւն իմ՝ այլ ի սէր սրբասէր և հեզաբարոյ եղբայրութեան ձերոյ։ Վասն որոյ հայցեմ և ժտեմ խոնարհաբար զիջանել ըստ աշակերտացն Տեառն, մանաւանդ թէ աղօթիւք օգնել, և մի քամահելով և պարսաւելով զանց առնել, գոլով և ձեր կարեկից և բընութենակից մեզ ըստ բնութեան. զի և ի գիրս աստուածայինս ի յոլով տեղիս մարդասիրութեամբն իւրով իրք նուաստ առաւել յարգի և գովլի՝ քան զառաւելն և բգ-

մեծամեծս ։ Այլ վասն խորանին մկրտութեան սպասու օծեալս եւս նուիրեցին ընծայաբերքն, և Տէրն իսկ գովեաց զլումայս այրւոյն. Նոյնգունակ Նմին և ես աղերսեմ ընդունել ձեզ զորակս զայս իբրեւ զնոյն. որ իբրեւ ի մէջ գիշերի թանձրամած խաւարեալ վերջացեալ ժամանակիս հազիւ թէ այսքանս ընձեռել կարացաք ապագայից ընթերցասէր եղբարցդ, ի փառս Հօր և Որդւոյ և սրբոյ Հոգւոյն, և ի յօգուտ լսօղացդ ։

Ն. Ծ. Աստուծոյ
Կաթողիկոս Աղուանից՝ Տէր Եսայի
Հասան Ջալալեանց ։



# ՀԱՄԱՌՕՏ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ԱՂՈՒԱՆԻՑ ԵՐԿՐԻ



## ԳԼՈՒԽ Ա.

Ընդ ժամանակս թագաւորութեան ազգին Պարսից՝ որ են կրօնիւք Մահմետականի, յորում տիրէին բնակութեամբ սկսեալ ի Կովկասային լեռնէ, և ի յեղերաց Կասպիական ծովուն, (որ երկաթի դրուն կոչի,) մինչև ի Մազանդարան և Աստարապատ. և անտի սահմանօքն Յօզպեկու հատեալ ի Խորասան, և ի Գանտահար բերդ, և անտի ձգեալ յեզր ծովուն Հնդկաց ի Բանտար քաղաք և այսր ի Շիրազ. և միջոցաւ երկրաւ հատեալ մինչև ի Բաբելոն (այսինքն՝ Պաղտադ.) անդէն և այսր հատեալ սահմանօք հատեալ մինչև ի Համատան և ի ծովն Վանայ. յորմէ և սահմանօքն Մարաց հատեալ ի Խոյ և ի Սալմաստ. և Նախջաւանաւ հատեալ ի Արաքս գետ,

և անտի Սահաթիւ կաղզուանաւ և կողբաւ-անցեալ ի գետն Մխուրեան՝ որ կոչի Արփայ-չայի։ Իսկ անտի անցեալ Պայզուլի ան-ուամբ նահանգիւ և ի սահմանս Վրաց ի Տփխիս քաղաք և ի Կախէթ՝ իւրովք բոլոր Թեմիւք և Թումանօք։ Իսկ ապա հատանի ի լեառն Կովկասու, դարձեալ ի նոյն ամուրն Ջունարակերու, (այսինքն՝ Դարբանդ,) և ի տեղի կայից գլխաւորի լեռնորդայն զոր Շամխալն անուանեն, և անուն տեղւոյ նո-րին Թարխու կոչեցեալ։ Արդ՝ ի յայս միջո-ցի ծովուց երկրիս արեւելեայց խառն ընդ-հարաւ և ընդ հիւսիս կողմանս Եւրոպիոյ՝ տիրեալ էին ազգն Պարսից որ Գզլպաշն կոչիւր, ունելով զաթոռ և զգահ արքայու-թեան իւրեանց զամենահռչակ արքայա-նիստ մայրաքաղաքն Շօշ, (այսինքն է՝ Սպա-հան.) և անդ կալով թագաւորացն՝ տիրեն և իշխեն վիճակեալ իւրոց հնազանդելոց ազգացն ձգեալ յաջ և յահեակ զթեւս իշխանութեան իւրեանց։

Եւ արդ՝ աստանօր տարակուսիմք առ-կըս նախնի ցեղապետութեանց՝ թէ յորմէ ազգէ և ծննդոց սերեցան սոքա թագաւո-րազունք, և կամ յորմէ հետէ յառաջա-ցեալք եղեն. քանզի սրբազան հայրն մեր

Մովսէս քերթողն հաւաստէ մեզ այսպէս, եթէ «Արշակ քաջ պարթեւն վանեալ ըզՄակեդոնացւոցն՝ զզօրավարութիւն Աղեքսանդրի. որ առն վաթսուն եւ կամ ուրեք կալեալ ունէին զթագաւորութիւնն Պարսից, որ եւ զեղբայրն իւր Վաղարշակ երկրորդ իւր կարգեալ՝ թագաւոր ի Հայս առաքէ »: Եւ այսպէս ի միոյ ցեղէ եղեալք երկուց ազգաց Պարսից եւ Հայոց թագաւորք պարթեւքն՝ մինչեւ ի ժամանակս Սասանականին Արտաշրի սպանանելոյ զԱրտաւան արքայ Արշակունի. եւ ինքն կործեալ զթագաւորութիւնն Պարսից. եւ ազգաց տիրեաց մինչեւ յերեւումն Մահմետի. որ զկնի երեսուն կամ ուրեք եւ պակաս ամի տիրելոյն իւրեանց, սպանին զՅազկերտ արքայ Պարսից, եւ տիրեցին նոցին իշխանութեան. յորմէ տիրապետեալ՝ ոմն Մահմուտ անուն բռնացեալ ի Սենդ, եւ անտի մինչեւ ի Խուրասան. եւ այսպ փոխանակելով զմիմեանս յառաջացեալ առին զՀոռէ: Իսկ որդի Մահմուտին Մասուտ անուն ի Հռէոյ էառ զԽորասան, զԽազնին, զԱսպահան, եւ զամենայն տունն Արագու եւ զԲրասատան. (այս քաս որքայ վարդապետին Վարդանայ:) Եւ այսպ առէ զուցանէ՝ որդի զՀայր

փոխանակելով յերկար ժամանակս նստան ի Խազուրն, որոց անուանքն են այսոքիկ, Աբու—ալի, Տաւութ, Ջաղըպէկ, Ապու—Թալիպ, Տողրիլպէկ, որ զօրացեալ ի Խալիփայէն, և առեալ զհրաման և անուն սուլդանութեան, ընդարձակեաց զսահմանն իւր սկսեալ ի Խորասանայ` և զամենայն երկիրն Պարսից :

Զսա փոխանորդէ Ալփասլան եղբօրորդի իւր, և զկնի նորա Մէլիք շահ կոչեցեալ. և ապա Մահմուտ սուլդան, և յետ նորա Պարքարուխ. և որդի Մահմուտ սուլդանին եհար զՊարքարուխն, և ինքն սուլդանացաւ : Եւ զկնի Մահմուտի որդի նորա. և Սանճար սուլդան ոմն սպանանէ զնա և առնու զիշխանութիւնն. և ապա Տաւութ որդի նորա. և զկնի Տողրիլ. և յետ նորա Մասուտ. և ապա միւս Տողրիլ. ըզկնի որոյ Ալփասլան, որ էառ զԱնի քաղաք մինչեւ ի Վրաց տուն, որ և պատուեալ ի Խալիֆայէն իւրեանց : Եւ այս Ալփասլան փոխեաց այլք Տողրիլ. և ապա Շահի արմէն, և զկնի Եըլտկուզ. զկնի որոյ Փահլուան և Խզլասլան որդիք սորա` որ ի միասին տիրեցին աշխարհաց. և այս հասանի մինչեւ ի ոխզ Թիւս հայոց : Յայսմ միջո-

ցի ոչ գտաք զորպէսն, բայց սոյն մարդա-
պետ առէ, թէ ի ոհէ թուին եկն Թաթարն,
և ի Խորասանու փախոյց զըրգիս Խորազմ
շահին: Իսկ գալուստ Թաթարին՝ և փա-
խուցանել զՋալալադին սուլտանն ի Խո-
րասանայ, և յառաջ խաղալն առ մեզ, և
յաղթելն և տիրելն ամենայն երկրի, և վե-
ճակելով ելանելն և առնուլն զաշխարհս, և
պէս պէս չարութիւնք և գործք նոցին զոր
անցուցին ընդ ամենայն ազգս արեւելից և
արեւմտից, Հիւսիսոյ և Հարաւոյ, զայս ամե-
նայն ուսուցանեն մի ըստ միոջէ Վանա-
կան, Կիրակոս, և սոյն Վարդան մարդա-
պետք և պատմագիրք, որք և հասուցանեն
մինչեւ ի չժե թիւս զպատմութիւն բռ-
նակալութեան սոցա. և զկնի ոչ գտաք
զորքանութիւն ամաց իշխանութեան սոցա.
և կամ թէ որով եղանակաւ բարձան, և ով
ոք էր որ հալածեաց և չքացոյց զնոսա յաշ-
խարհէս մերմէ. և կամ ո՞յք էին որք տիրեցին
և բռնակալեցան երկրին Պարսից. մինչեւ
առ ի պլե թուին գալն Թամուրլանկին, որ
և նա գազանաբար եկեր և մանրեաց, և ըն-
ճմլեացորդսն առ ոտն եհար ըստ աւելեանն.
և զամենայն տիեզերս ի հարկի կացոյց,
սկսեալ ի Սմրղանդայ մինչեւ ցՍամարիա և

ցԵգիպտոս, ժամս ութ և տասն մաշելով ի սուր զամենայն հասակ, և քայքայելով զեկեղեցիս ուր եհաս գնացք նորին, որոյ ըզհանգամանս չարագործութեանն պատմէ քեզ Թովմա վարդապետ Արծրունի: Եւ ըզկնի սորին գալ Պարսյ Յուսուփ չարին աւէ ի ՅԾԵ Թուին. և կերպակերպ չարիք նորին. զկնի որոյ ի ՊՀ Թուին Շահռուխ ոմն կրկնաչարագոյն քան զնա երեւեալ, և ապա Ջաղաթայն: Յետ այսորիկ Ջհան Շահն ազգաւ Թուրք, որ թագաւորակերպ տիրեալ բոլոր երկրին Պարսից ի ՊՁԸ Թուին. և զսա փոխանորդէ Եաղուբ փադշահ որդի իւր, ի ՋԻԸ Թուին հայոց:

Այս Եաղուբ թագաւոր որ նստէր ի Դաւրէժ շահաստանի, փեսայացոյց ինքեան ի քոյր իւր զշէխ Հայտարն, որ էր որդի Շէխսէփուն որ նստէրն յԱրտաւիլ քաղաքի: Այս շէխ եղելոց սկիզբն և ազգն և որպիսութիւնն ոչ գտաք ուրեք թէ ո՛, կամ յորմէ ցեղէ յառաջացեալ բնակեցան աստ: Այս շէխ Հայտարին ծնանի որդի մի զոր անուանեն Իսմայէլ, և վասն ոչ ունելոյ զաւակ Եաղուբ թագաւորին, վասն որոյ՝ շէխըն և կինն իւր խորհեցան հնարիւք իմն սպանանել զԵաղուբն, զի ինքեանց և որդւոյ

իւրեանց միացէ ժառանգ Թագաւորու-
Թեան. որ և արարին իսկ: Բանզի կոչեցին
զնա ի պատճառս պատույ, և պատրաստեցին
նմա կերակուր մահարար, և ի ճաշակելն նո-
րա՝ իսկոյն զգաց. և ապա բռնի հրամայեաց
ուտել և ինքեանց. և այսպէս ի միում ժա-
մու մահացան Թագաւորն և քոյր իւր և
չէին. և յաղմկել զօրացն՝ զմանուկն Իսմայէլ
փախուցին ի Աղթամար կղզի. (այս ըստ
Աղաքել վարդապետի դաւրիժեցւոյ վիպա-
սանութեան.) և այնու զկնի զմիմեանց ե-
լեալ յառաջացան ի գահ իշխանութեան. որ
և Անխուր անուն ոմն բռնացաւ և տիրեաց.
և հաստատեաց զաթոռ իւր Ասպահան
ի Ջխր Թուքն. և յետ նորա Արլանդն սուլ-
ժամանակաւ. որ և տեւեցին մինչեւ ի ՌԾ
Թուին հայոց: Արդ որպէս ի գլուխ ճառիս
խորհելով լոյս եառ ըստ կարգի և ըստ
արդարութեան ողջոյն գիտել և գրել ըզ-
կարգ Թագաւորութեանն Պարսից, որպէս
որդի զհայր փոխանակեալ: Այլ այսքան
միայն ի հնագիր պատմութեանց հաւաքեալ
զանուանս երեւելի և նշանաւոր արանց
գոռոզաց և ամբարշտաց, հասուցաք մին-
չեւ ցայս վայր՝ ի զքօսանս եղբարց մերոց
սիրելեաց. և Քրիստոսի Աստուծոյ մերոյ
փառք յաւիտեանս. ամէն:

# ԳԼՈՒԽ Բ.

Յաղագս սկզբան թագաւորութեան Պարսից, և որք Կարմրագլուխք նոցին. և խանգարման իշխանութեան նոցին:

Արդ՝ որպէս ասացաք զպատճառն Յաղուբ թագաւորին և շէխ Հայտարին, և փախուցանելն զմանուկն Իսմայէլ ի Ճըղթամոր կղզի, և զկնի ամաց ինչ զարգանալոյ տղային՝ աղմուկ շփոթի ոչ սակաւ լինէր տանն Պարսից. և սա միաբանեալ զօրագլխաց և զօրացն հանեն զԻսմայէլն ի կըղզոյն և թագաւորեցուցանեն ի յինքեանց վերայ ասելով, թէ սա է ժառանգ երկուց կողմանցն, այսինքն շէխին, և գոլով քւէր որդի Յաղուբ թագաւորին, և սմա անկ է թագաւորութիւնն. վասն որոյ հնազանդեցան և երկրպագին նմա: Եւ նա ելեալ ի ՋԾ թուին, նախ հալածէ զյառաջ ասացեալ զԱլվանդն, և յինքն գրաւէ զիշխանութիւնն. և այսպէս պատերազմեալ ընդ յաջ և յահեակ թշնա իւն զամս քսան և հինգ, ընդարձակէ զսահմանս իւր ըստ կարողութեան. և վարեալ զիշխանութիւնն՝ մեռանի ի ՋՀԵ թուին: Զկնի որոյ թագաւորէ

որդի նորին Շահ Թահմազ ի նոյն ամի, այր քաջ և արի։ Սա յոլով տեղիս արար ընդ իւրով իշխանութեամբ, որպէս զԱտրպատական և Վրաց աշխարհն բռնութեամբ հնազանդեցոյց. և ի կողմանս Խորասանու նոյնպէս ընդարձակեաց. նա և բազում կարգս ուղղեաց իշխանութեան իւրում և թեթեւութիւնս հարկաց, որպէս և ասեն։ Իւր սա վախճանի ի ռիդ թուականին, և փոխանակ կացուցանեն զորդին իւր Իսմայէլ անուամբ. որոյ կամեցեալ զբռնագլուխոյն և զանհնազանդ խորամանկսն ի զօրագլխաց և զօրաց իւրոց բառնալ յերեսաց. իսկ նոցա աճապարեալ քան զնա ընդ փոյթ կենազրաւեն՝ որպէս ասի հնարիւք իմն մահացուցեալ. և զկնի սորին բերեն զեղբայր իւր Խոտապանտոյ կոչեցեալ ի Խորասանոյ, այր անարի, պակասեալ եւս ի լուսոյ. և սա եւս զամս սակաւս դաժանութեամբ և դառնութեամբ վարեալ զիշխանութիւնն՝ մեռանի. և ապա ի ռլթ թուին որդի սորին Աբաս՝ կոչեցեալն Մեծ, Շահ նստուցանեն ի Սպահան. որ և ընդ սակաւ ժամանակս հնազանդեցոյց զշրջակայ թշնամիսն իւր, և ի բուռն եառ զբոլոր երկիր հայրենի իշխանութեան իւրոյ. և ի Խորասանայ մինչեւ

ցԵփրատ գետ և ցԲաղդատ՝ բաց յԱրարա-տականէս ։

Վասն զի Թագաւորն Կոստանդնուպօլսոյ իսմայէլացի, խոտխան սուլդան Մուրատ կո-չեցեալն Խոնդքար, խաչընդդակն եղեւ սմա. զի եհան զօր և հրաման ի վերայ երկրիս Արարատականի՝ գալ և առնուլ զսա. որ և եկեալ առին իսկ զԵրեւան, զՆախջու-ան, զԹաւրէժ, և զԳանձակ, մինչեւ ի սահ-մանն Վրաց, զՏփխիս, և զբոլոր տունն Վրաց. այլ և յայն կողմ կուր գետոյ զՇա-քի, զՇրուան, զՇամախի և զԴարբանտ. այսքան քաղաքաց և երկրի տիրէին Օս-մանցիք ։ Իսկ զկնի աւարտման պատերազ-մաց յայն կողմանցն Թագաւորն Շահապաս և խաղաղութեամբ նստեալն յԱսպահան մայրաքաղաքի, զկնի սակաւ ամաց ապա դարձուցեալ է զերեսս ի վերայ երկրիս Արարատականի առնուլ զսա. որ և եկեալ է բազմօք զօրօք ի վերայ Թաւրիժու, և ըստ բաղդի և աջողման իւրոյ առեալ է զԹաւրէժ, զՆախիջուան, և զԵրեւան ի մի-ում ամի. և ապա զկնի միոյ ամի առեալ է զԳանձակ և զամենայն երկիրն Վրաստա-նու, զՇամախի, զԴարբանտ և զշրջակայս նոցա, զՏփխիս քաղաք, և զբոլոր տունն

Վերայ ի ձեռաց Օսմանցւոց ։ Եւ զկնի այ-
սոցիկ արարմանց հաշտութիւն եւս ընդ
Թագաւորին Օսմանցւոց հաստատեալ է՝
զսահմանս և զբաժինս յատկացուցանելով
իւրաքանչիւրոց ի մէջ երկուց աշխարհացս
Պարսից և Հոռոմոց ։ Եւ սա այսպիսի
քաջութեամբ և արիութեամբ կեցեալ վախ-
ճան առնու ի ռՀԹ թուին ։ Եւ ապա զկնի
սորա թագաւորեցուցանեն զթոռն սորին
Շահսէֆի . ի սոյն թուին Ասպահան և սա
եւս արիութեամբ և խաղաղական կենօք վա-
րեալ զիշխանութիւն իւր՝ փոխի յաստեա-
ցըս , թողլով զթագաւորութիւնն որդւոյ
իւրում՝ փոքր Շահաբասին ի ռՂԱ թուին
Հայոց ։ Որ և նա առաւել հաստատեաց
զգահ իշխանութեան իւրեանց , և խաղա-
ղացոյց զերկիր և զժողովուրդ իւր յամե-
նայն կողմանց թշնամեաց . որ և յաւուրս
սորա շինեցան ամենայն աւերակ գեօղք և
քաղաքք , և երկիր աշխարհիս Հայոց և
Պարսից . զի կարի քրիստոնէասէր և աշ-
խարհաշէն էր . որոյ աղագաւ հաստատե-
ցան յամենայն տեղիս եկեղեցիք վանորայք
և անապատք , մանաւանդ սուրբ Աթոռն
Էջմիածնի , և սուրբն Գանձասար Աղ-
ուանս , առ սրբազան հայրապետութիւն Փի

զխպպոսն և Պետրոս կաթողիկոսին Աղուանից։ Այս սա եւս այսպէս բարեբախտիկ վեալ յաշխարհի, վճարի ի ՌՃ թուին. և էառ զիշխանութիւն թագաւորութեանն որդի նորին Շահ Սուլէյմանն ի նոյն ամին. որ և յաւուրս սորա առաւել խաղաղութիւն եղեւ աշխարհի և շինութիւն աւերակաց, և բազմամարդութիւն երկրի. ուղղութիւն և իրաւունք դատաւորաց. չափաւորութիւն հարկապահանջութեանց. և բարեկարգութիւն ամենայն գործոց և արարողութեանց։ Սա եւս այսպէս կառավարեալ զերկիր և զհնազանդեալս իւր՝ վախճանի ի ՌՃԼԹ թուին։ Զկնի սորա թագաւորէ որդի սորին Շահ Սուլթան Հիւսէյին կոչեցեալ՝ ի ժամանակի մ րում, ի տխս տըպագրութեան գրոյս ի ՌՃԽ թուին։

Արդ՝ զոր ինչ մինչեւ ցայս վայր եղեալ էր՝ ի նախկին գրոց պատմութեան, մանաւանդ ի գրոցն Առաքել վարդապետի ծաղկաքաղ արարեալ հաւաքեցաք, որում Տէր ողորմեսցի. յետ այսորիկ պարտիմք ի ներկայ ժամանակս այս՝ յորում կամք, գծագրել սոսա. և Քրիստոսի փառք յաւիտեանս. ամէն։

# ԳԼՈՒԽ Գ.

## Յաղագս Մ. ըրտոհման և խանգարման Լուսաւորչ. Բեանն Պարսից։

Ի տասներորդ ամի թագաւորութեան իւրում Հիւսէին կոչեցեալ Շահ սուլդանըն տայր հրաման մարզպանի և աշխարհագիր առնել ազգին Հայոց, և ամենայն ազգաց ընդ իշխանութեամբ իւրով եղելոց. և ելեալ հրամանատարք նորին արք իւրու հաւատարիմք տան նորա՝ գրիչք և քարտուղարք, զի անխափան և առանց թագուցանելոյ գրեսցեն զամենայն հասակ ի հնգետասանամենից և ի վեր, սպառնացեալ ի հրովարտակին՝ այսպէս. «Եթէ ոք գտցէ զթագուցեալ և զղօղեալ ոք, և յայտնեսցէ զայն արքայի, գլուխ ղօղելոյն՝ արքայի, և ինչք նորա առ այն լիցի՝ որ գուշակեացցէն»։ Զոր և արարին իսկ. զի յոյժ յուզմամբ և որոնմամբ գտնեալ տեղեկանային այնպէս հնարիւք և սպառնալեօք։ Ի գիւղի ուրումն զտանուտէր գիւղին և զքահանայսն և զհիւրընկալն՝ զոր Գզիր ասեն, արգելուին ի տունս ուրոյն և զատ ի միմեանց. և ապա ասել տային զանուանս որանց եղե-

լոց ի գիւղսն և գրէին, և բերեալ ի մի վայր՝ հաւասար տեսանէին. և թէ աւելի կամ պակաս գտանէին ասացեալքն՝ ի միմեանց. (և զի թուղթ եւս առնուին ի բերանոյ նոցա, այսինքն հուշիկս, զի թէ սուտ գրասցեն, այնքան տուգանս վճարեսցեն,) կախելով ի փայտէ բրածեծ առնէին զարսն ասացեալ ի սակս տուգանին. ըստ նմին կաշառս յոլովս և տառանորդս, և զկարգեալ վարձս զինուորացն առաւել քան զչափն առնուին, և ապա զգրեալն կրկնէին: Այս յետ այսորիկ գրեցին և զվանորայս զանապատս և զգիւղօրէից եկեղեցիսն. ըստ նմին և զեպիսկոպոսունս և զաբեղայս, և զերիցունս առհասարակ ի թիւ արկին. և աւարտելով զնոսա սկսան գրել և զվաճառականսն, զճանապարհորդսն, և զորս սուղ ինչ առեւտրոյ տեարքն էին. և զամենեսեան ի համարաթիւն գրելով՝ տարեալ ցուցին առաջի արքային: Իսկ անդ եդին հարկս ի վերայ գրելոց գլխոյն՝ երեքպատիկ յաւելմամբ ի վերայ առաջնոյ սահմանին. և ի վերայ եկեղեցական պաշտօնէից որ յառաջնումն ոչ երբեւէր բնաւ, տասնապատիկ առաւել քան աշխարհականաց ծանր բեռինս եդին. և զայն աշխարհագրութիւն հայկա

մինչեւ յերկու ամս աւարտեցին . զի ի ութնը թուին օկսան եւ ի ութսա թուին հրամային տարային զերեք տարւոյ զգլխահարկ ժողովրդեանն՝ զոր Նոր եդին (հաւաքել). Նաեւ զայն եկեղեցականաց եւ կրօնաւորաց կարգեալքն ընդ նմին միահաղոյն առնուլ: Նա եւ մեծ վէպքն Նորպատականի որ նստէր ի Պաւրէժ քաղաքի, որոյ անունն էր Միրզաթահիր, հազար հարիւր արամբք, եւ եկն յերկիրս Վարաբաղու եւ ի Գանձայ քաղաք. եւ ըռկաւ առնուլ յոյժ աւելորդօք քան զգրեալն:

Եւ ցրուեցան զօրքն ընդ երկիրս եւ ընդ գիւղորայս ի թիւ արկեալ գլուխս. եւ քանզի յոյժ ծանր էր լուծն եւ ոչ կարէին տանել, վասն որոյ չարչարէին եւ կեղեքէին, եւ ջարդելով առնուին ըստ չափու իւրեանց ի յուրովկացն՝ յոլով, եւ ի փոքունցն՝ փոքր. զի (մեծ) գեղն հարիւր յիսուն, հարիւր, կամ յիսուն թուման. եւ յոյժ փոքրն յերեսուն եւ կամ ի քսան թումանէ չէր պակաս: Նոյնպէս ի վաճառականաց, եւ յամենայն արուեստաւորացն առին: Եւ այսպէս ամի ամի զգլուխն համարէին, եւ հարկահանքն եկեալ ճշդիւ առնուին: Յետ այսորիկ միւս եւս կերպիւ հարկս եդին, եւ անուանեցին զայն Նոյնուրան . դարձեալ միւս եւս ե-

դին . և զայն տասցին Ճահղափ տիրաջաթ . միւս եւս յաւելլին , և անուանեցին Ճեղ-փինար , և զայս երեքպատկեցին ։ Եւ դարձեալ կրկին եւս եղեւ հրաման ելանել և գրել զամենայն սահմանս երկրի , գիւղօրէից և ագարակաց , զհող , զջուր , զայգի , զանդաստան , զծառ , զատունկ , և զամենայն ինչ որ պիտոյ է մարդկան՝ սա հասարակ զամենայն դրեցին , Թէ՛ Հայոց , և Թէ այլազգեաց , այլ և քրիստոնէականաց , և խաչնարածաց . այլ մի որ Թագաւորաց տանն , զնոցին եւս զանդեաստս և զհօտս , և զջոկս , և զջոլլիրս , և զերամս ամենայն անասնոց չորքոտանեաց ի Թիւ արկին , և յառաջնոցն վերայ կրկին յաւելլին զհարկս ։

Զայս ամենայն զոր գրեցաք՝ նորահնար չարիք էր , զոր եդին ի վերայ առաջնոյ սահմանեալ հարկացն , որ և առաջինն եւս ծանրագոյն էր բեռն ի վերայ ժողովրդեան . այժմս փոխանակ Թեթևացուցանելոյ , զայսքան ևս յաւելլին ի վերայ ։ Եւ դարձեալ որպէս սովորութիւն է Պարսից իշխանուԹեանն՝ յամենայն քաղաքս տէրութեան իւրեանց , և ի վերայ ամենայն երկրի , պետս և գլխաւորս զօրաց կացուցանել , որպէս Խան , Սուլթան , Դուլբեկի , Վէզիր , Դա-

րուղայ՝ և Թուխլոսր։ Յառաջնումն որոյ միանգամ այսպիսեացս իշխանութիւն ինչ տայրն, ոչ դիւրեաւ փոփոխէին և տանուրն ի նմանէ. բայց թէ մեծ յանցանք ինչ և կամ վնաս տանն յայտնիւր, և կամ վասն զրկողութեան և ագահութեան գանգատողք և դատախօսողք երթային ի դուռն արքայի, և զյանցանս տանն յայտնի կացուցանէին, և ապա հաղիւ ուրեմն տանուրն յառնէն յօնմանէ զիշխանութիւնն զայն։ Իսկ այժմըս և այսու թագաւորաւս ոչ այսպէս, այլ թագաւորն և նախարարք իւր կաշառակուր լեալ՝ փոյթ ընդ փոյթ փոփոխեալ հանէին. և ի միում ամի երկուս և երիս տեարս և իշխանս՝ ի միում քաղաքի և գաւառի զկնի միմեանց առաքէին։ Եւ նոքա եկեալ՝ որպէս և ինքեանք կաշառօք ընտացեալ էին զիշխանութիւնս իւրեանց, նոյնպէս և նոքա այնպէս ամենայն զդատ և զիրաւունս ժողովրդեան ի բաց եղեալ՝ կեղեքէին, կողոպտէին՝ զհնազանդեալս իւրեանց. նոյնպէս տանէին և օրինապահք դպիրք նոցա, այսինքն դատաւորք Ճխալըզլամք, շէխք, և որոց Պաղիս անեն։

Դարձեալ յաւելլին միւս ևս չարիս, զի որք միանգամ տեարք էին գիւղից և ագարակաց.

նաեւ վարձաւորք՝ այսինքն գործօղ հասեալ, զօրավիգեաք եւ զօրք որքան դրամոյ չափ որ որք եւ ունէր, զնորին տապանագրին եւս հանին, եւ թագաւորական սարքին. իսկ նոքա ոչ յիւրեանց դրամոցն տային, այլ զայն եւս յաւելին եւ եդին ի վերայ իւրաքանչիւր հնազանդելոցն, եւ այնպէս առնէին: Նմանապէս եւ այլ բազմահոյլ չափս յորդեցին. ուստերս եւ դստերս ուժգին քարշելով, զարս եւ զկանայս բանի ուրացուցանելով, եւ զյետսամնացելոց զինչսն եւ զստացուածսն եւ զգանձս յափշտակելով՝ եւ ուրացողացն տալով. որպէս եւ որքան տօմլաթաւորս եւ մեծատունս աչօք մերովք տեսաք ի Ջուղայ եւ Երեւան՝ որ ի վերջին աղքատութիւնն եւ ի թշուառութիւնն հասեալ էին. եւ հարցեալ զպատճառն տեղեկացաք, որ վասն ուրացողացն եւ յափշտակութեան ընչից իւրեանց էին եղեալք այնպէս: Նոյնպէս զամենայն բարեկարգութիւնս բարձին յերկրէ, զորս մանրամասնաբար ոչ գրեցաք. միանգամայն եւ օրէնս եդին իւրեանց. իսկ գտան հակառակն՝ փոփոխելով զեդեալ սահմանս նորա, զոր վասն գլխահարկաց եւ դատաստանաց եդեալ էր ի վերայ նոցա: Վասն այնորիկ եհաս եւ ի վերայ նոցա իրաւունք

ւորսաց յազգէն Պարսից, որպէս Թիւ համարոյ սոցին է . և կամ Թէ ըստ կանոնաց Նախախնամողին Աստուծոյ, որ զիրաւունս հատուցման իւրոյ, իբրև զգաւազանն ի ձեռին ունի՝ և ում կամի արքայացուցանէ զնա . և ահա է Թագաւորութեան մարդկան և երկրի, որում և կամի՝ նմա շնորհէ : Սա որում և արժան է տեսանել . և զի եղև ի ժամանակս այն սուլղան Ջիհանշին Թագաւորիս, ազգ մի ի կողմանս Խորասանայ և Դամաստահարու, զորըս Ոզուանք անուանեն . և սոքա վասն ազգիս այսորիկ՝ եթէ են բնիկ ի լեռնաքընակացն Կաւկասու և յերկրէն Սքինաց, որ են ազգաւ Ոզուանք, որ այժմ եւս նախկին անուամբն վերակոչին . և լեալ են հաւատով քրիստոնեայք . և սորա զկնի ժամանակաց Լանկթամուրն կոչեցեալ բռնակալ, որ տիրեաց յոլով մասին աշխարհիս յաղթութեամբն իւրով, որ պատմութիւնքն վկայեն զամենէ, և ասեն վտարանդեալ զազգս զայս ի տեղւոյէ իւրեանց, և տարեալ զքըսան և հինգ տունն բնակեցոյց յերկրին յայնմիկ : Եւ զկնի ժամանակաց դարձուձեալ են ի կրօնս Մահմէտի . և այսու ուռճացեալ և բազմացեալ են, և լեալ իշխանք և պետք յիւրաքանչիւր մասին, և տիրապե-

Ճապաղ տալ. և այս ոչ թէ ի միում աւուր, այլ յերկար ժամանակս: Եւ ապստամբքիւ սոցա սակաւ ամօք, զկնի և կից միաբանից եղեն. և թէպէտ թագաւորին զօրս գումարեալ ի ձեռն զօրագլխաց և սպարապետաց առաքէր ի վերայ նոցա՝ բաշխելով և յոլով գանձս, սակայն ոչ ինչ օգտիւր, այլ յաղթահարեալ լինէին. թէպէտ ոմանց բազմաւ ջանիւ և հալիւ ուրեմն դադարեցուցին զխռովութիւնն ոչ այնքան յաղթութեամբ՝ քան թէ հաճելով զմիտս նոցա ըստ կամաց իւրեանց: Բայց կազ կողմանցն Պանտահարու և Կոմկատայնոց յերկարեաց բազում ժամանակս, զոր յիւրում տեղւոջն տեսցուք՝ եթէ Տէր կամեսցի: Եւ նմա փառք յաւիտեանս. ամէն:

## ԳԼՈՒԽ Ե.

### Որ ինչ գործեցին ազգն Հոնաց ընդ անցանելն երկիրս Աղուանից:

Զի յայտնի իսկ է ամենեցուն այս, թէ տուն և կամ այլ ինչ շինուած թէ մեծ թէ փոքր՝ յարժամ հնացեալ փլանելոյ կայ,

նախ որմունք և հիմունք խախտեալ քանդանին, և այս ձեղուն տանեացն իջանէ. և զննի այնորիկ ամենայն տանիքն ի փայտ և ջեալ կործանի: Նոյնպէս եղեւ և Թագաւորութեան Պարսից. քանզի բնակիչք լերինն Կովկասու, որք Լազկիք կոչին, յայսմ կողմանէ լերինն՝ ի տեղի որ Դախ, Ճար, և Թալա, և այլ գիւղօրայից անուանք յորջորջին, որոց գլխաւոր էր Ալի սուլդան անուամբ, որ նախ հրամանաւ Շահին նստէր: Սա և այլ յոլովք ինքնագլուխք միաբանեալք ընդ նմա՝ դարձան և ապստամբեցին ի Թագաւորէն ի ռՃկա Թուին. որ և յառաջ քան զայս Խնիսելու երկիրն, այլ և Շաքուա, Պանջաղ, Մուղանպարաք, Չարվոմթալու, և այլ յոլով գիւղօրայք ասպատակեալ և գերեվարեալ էին և աւարի առեալ: Նոյնժամ եկեալ ի Քանոտաք անուն գիւղօրայս՝ խապառ տարան: Նաև այսպէս զբզռեալ առ յամէ ասպատակ սփռեալ յայս կողմ և յայն կողմ Կուր գետոյն յերկրին Շաքուայ և Գապալու և Գասանու նահանգին մինչեւ մերձ ի Շամախի քաղաք: Իսկ յայսմ կողմանէ յոլովք ի նահանգէն Գազախու, որ է Սխատեւու՝ և ի յերկրէն Սմիրշամ Շամշադլուէն որ են Զակամներն:

Կայ և չորս գետն Գանձապատանու՝ այսինքն Շամքոռ, Գանձապատան, Ակնանա-պատու ձորն, և Բուրթաքպատան. այլ և յորովք ի գիւղորէից Պարտաւու, և զգաշտավայր գիւղօրայն միահաղոյն կոտորեալ, գերի և աւարի առեալ ամենայն արարին, և զմնացեալսն փախստեայ փրչերքս և ի դարանձաւս Արցախու, և իւրաքանչիւր համդէպ ամուր տեղիսն զերծեալք զապրուստ իւրեանց հոգւոյն: Այլ և ի ռՃՀ թուին նոյն ինքն Ալի սուլդանն գումարեալ ի վերայ լնկերան զօրս ի նոյն ազգէն Լազկացն թուով ոչ սակաւ քան զութ հազար, եկն ի վերայ քաղաքին Գանձակու մինչեւ եմուտ ի պողոտայն (այսինքն Բուջան,) որ է կոչմն Սուլթօքուլան անուն գեղջն, թոյլ տալով քաղաքացւոցն: Իսկ յորժամ մտին ի ներսն, տապա յարեան քաղաքացիքն և կալան առաջ և անտի զանցս գնացից նոցա, և կոտորեցին ի նոցանէ մինչեւ ի հազար քան, և միոգիս աւելի կամ պակաս. և ոչ ինչ կարացին առնել. այլ յետս դարձեալ ամօթով գնացին ի տեղիս իւրեանց:

Իսկ այսքան իրս զոր աստ գրեցաք ի մէնջ, յութ և յինն տարի գործեցաւ, բակեալ ի ռՃԿ թուէն: Իսկ որքան հրաման

եղեւ ի Թագաւորէն գնալ զօրացն Պար-
սից ի վերայ նոցա, այսինքն բնակելոցն
ի քաղաքն Շամախու և Գանձայու և ի շըր-
ջակայս նոցա. և խանքն որք նստէին անդ,
որքան ջանացին՝ բնաւ ոչինչ կարացին դի-
մակայել, մանաւանդ Թէ յաղԹահարեալ կո-
րուցին առաջի նոցա. որպէս և Հասան ալի
խանն Շամախու հնգետասան հազար զօրօք
գնաց մինչեւ ի սահմանս նոցա. և նոքա յա-
ռաւօտու պահուն յանկարծօրէն հասին ի վե-
րայ նոցա և զյոլով մասն զօրացն կոտորեալ՝
զխանն եւս սպանին. և մնացեալքն փախըս-
տեայ դարձան: Այլ և ապստամբեալն
Շամքօռու, Ուղուրլու խանն Գանձայու
ել ընդ առաջ նոցա և ընդ կռուելն փախու-
ստեայ դարձաւ, և եմուտ ի Գանձայ: Այլ
և Իփիչի խան անուն ոմն իշխող Շաքուայ՝
սուղ ինչ ժամանակ ընդդիմացաւ նոցա,
զնա եւս սպանին: Իսկ ի վերայ այսր ամենայ-
նի ազգս այս ժպիրհ առաւել եւս համարձա-
կեցան, և ապա ձեռն ամբարձին ի վերայ
երկրին Կախեթու և ազգին Վրաց. որ և
նախ քան զայս քանիցս անգամ ուժգնու-
Թեամբ բախեալ էին ընդ միմեանս, և հե-
ղուին արեան ոչ սակաւք արարեալ երկո-
ցունց կողմանց. որպէս և Իմամղուլի խանն

Կախեթու մի անգամ և երիցս փախուցին ի պատերազմէ, և աւարի առին զամենայն կահ և կարասի նորա: Իսկ այսպէս յառաջ խաղալով ամ յամէ աւերեցին զամենայն երկիրս նորա, մինչև ի հայրենիս թագաւորանիստ տեղիսն իւրեանց, և զերկպառակութեան բանն ի բաց թողեալ՝ ի յամուրս Թուշաց լերանցն ելին: Իսկ սոցին այսպէս և այսքան ժպրհելոյն միւս ևս գոյ պատճառ, զոր այժմ գրեցից:

Քանզի յերկրին Շիրուանու ի նահանգին Պապալու գոյ իշխանութիւն ազգի միոյ Մահմետականի զոր Մէլիք անուանեն, ի գիւղն Պուրթղաշին կոչեցեալ Պարասու անուանեալ տեղին: Իսկ երբեք թէ սոցին եղեւ անուն Մէլիք՝ զոր Մէլիք Մհամմառուաւէին, այր հանճարեղ և քաջուժեն յաղթաղակ, և յայժ ագահ քան զՋուղա, և անյագ քան զողորուկ. սա զբոլոր երկիրն Պապալայու ի բուռն էառ Մախմայիւ ի խանէն Շամախու: Իսկ երկիրն էր բարեբեր և չքնաղ և մարդաշատ, թէ Հայ ազգօք, որ ի Պարաքաղու երկրէն ժողովուրդք յոլովք անցեալ էին յերկիրն այն աւելի քան զտեղականն. և եթէ այլ ազգօք՝ որ բնիկ յերկրէն էին, յորոց ոմանք հնարիւք Մէլիքս

վերայ է, և կամի ապաստանիլ ի քէն։ Նա-
արար հրաման զամենայն ինչսն զգայուն
և շարժուն՝ որ ինչ և իցէ՝ ի գիր ձգել.
և առնուլ (ի գանձն) Թագաւորական. և
զինքն իւրայնովք ի բանտ արկանել. որ և
արարին խոյս։ Նա եկեալ դահիճք արքայա-
կան ի գիր և ի շուք ձգեցին զտուն և զինչս
Սելքեին. և զինքն ընդ եղբօրն, որոյ անուն
Ահմատ կոչիւր, կապանօք տարան ի քաղաքն
Համախի, և արկին ի բանտ ամիս ինչ. և
դարձեալ արձակեալք անտի՝ կրկին կարգե-
ցան յիշխանութեան իւրեանց։ Բայց ինչք
սոցին զոր առին յարքունիս, ամէնին ըլթիւ-
ոսկւոյն և արծաթոյն քննիլ իբրև եօթա-
նասուն հազար թուման, զատ ի յայլ կա-
հից և կարասեաց, և չորքոտանեաց և մլքե-
րաց, որոց ոչ գոյր թիւ։ Քանզի ամէին ընկիլ
ամս Ջրաղաց հինգ հարիւր. փինի որով զբր-
րինձն զատեն՝ հինգ հարիւր. ջոռ և նաւինակ որ
զապրշումն քարշեն՝ հինգ հարիւր. գետք
և առուք զոր ալի ասեն՝ ի վերայ արարից
և արմտեաց երկրագործութեանց՝ յոլովք.
և զայլն մնօք նկատեսցես փարթամութեան
առնս։

Դարձեալ զկնի սակաւ ամաց անցելոց
ի վերայ այսր ամենայնի, Չուսէին անուն ո-

մին խան Շամախու՝ կրկին ըմբռնեաց զտա-
ւաւ երկուսին եղբարցն հրամանաւ Շահին, և
գլխատեաց. և այսպէս ի ձեռն առեալ զերե-
սին որդիս նորա զոր Փէյքար, Իպրահիմ, և
Պաումանէին, յղէ չարչարանօք և խոշ-
տանգանօք ետ հանել և զմնացորդս ընչիցն,
զոր առէին քսան և հինգ հազար թումա-
նայքան եւս այժմ ունին և թողին զնոսա:
Նայս Փէյքար անուանեալն գնաց առ Շա-
հըն, և առեալ զՄէլիքութիւն եկն ի տեղի
իւր, և վարէր ըստ հայրենի սովորութեան:
Որ և զկնի չորից ամաց միւս եւս Հիւսէինն
անուն խան Շամախու, ետ գլխատել զՓէյ-
քարն ի տան իւրում, և այսպէս զտունն, ըզ-
կանայս և զորդիս և զամենայն ինչսն իւրե-
ն ի գերութիւն վարեալ ածին ի Շամախի.
զկնի որոյ զննեալ և որոնեալ զամենայն զոր
ինչ և ունէր, զայն եւս առին և պարտին ար-
քունիս. որ և զհամար ընչից սորին եւս ասա-
ցին գոլ աւելի քան զքսան հազար թումանի:
Բայց եղբարք սորին Իպրահիմն և Պաումանն
փախուցեալ գնացին առ Սէլի սուլթանն վերոյ
յիշեալ. և անտի անցին յայն կողմն լերինն
առ մեծամեծս ազգայն այնոցիկ Լեզգեաց:
Ձի որպէս ասեն՝ երկուս կրօնս ունին Մահ-
մետականաց, ոմանք Շիայք կոչին՝ որ են

Պարսիկք և Ղզլպաշք, և ոմանք Սուննիք՝ որ են Օսմանցիք, և այս Լեռնականք և Աղուան ազգն Ղանտահարու, և Օզպէկք, և Պու-խարացիք, և Արաբացիք, և այլ յոլովք որ ընդ տիեզերս կան կրօնիւքս այս. և վասն այն գնացին սոքա առ Նադիրն, վասն զի ընդ նմա միակրօնք էին, և տեսեն թէ բա-կոսն և թագագլուխ շրջեցան ի դրունս նո-ցա վասն նախատանաց իւրեանց՝ զոր կրե-ցին ի ձեռաց Շահիցն. քանզի այսպէս է սովորութիւն տեղւոյն: Եւ այսպէս շրջիլն նոցա ի նախանձ դրդեալ զնոսա, և չարա-ցան քան զգազան կատաղի. և յոյժ ամօթ համարեցան իւրեանց այնպէս լինիլն նոցա. և ձայն տուեալ միմեանց՝ միաբանեցան և խոստովանեալ ժողովեցան ի մի վայր բիւրք բիւրուց և հազարք հազարաց. քանզի միշտ լեէին պատրաստ յայսմ կողման եղելոց Նադրեացն՝ զոր նախ յիշեցաք, և նոքա ևս խորհեալ էին գալ և խառնիլ ի սոսա: Որ-պէս և յանցեալ ամին Օուրխայ անուն գլ-խաւոր նոցա եկն մինչև ի Վրաց տուն. անցեալ ի ներքոյ Կախեթու և Տփխիսու աս-պատակեաց զգաւառն զոր Սոմխէթ և Դուշմնախի ասեն: Իսկ այժմ ասկս վերոյ ա-սացեալ պատճառին ի ձձհա թուրին օգնու-

տասի տասն, դրոհ տուեալ առհասարակ միահաղոյն ազգս այս Լազկիք, ամենայն գլխաւորքն իւրեանց որք էին այնաքիկ, նոյն վերոյ ասացեալ Սուրխայն, Շամխալն, Խամին, Հաճի Դաւութն և Ալի սուլդանն, ամենայն զօրութեամբ իւրեանց եկին ի վերայ քաղաքին Շամախու, և յաւուրս ութ սաստիկ կռուեցան, և ոչ կարացին առնուլ: Այլ և համբաւ եւս եհաս առ նոսա ի հեռուստ, իբր թէ յոմանց յեւրոպայից իւրեանց առնկեալ լցէ զերկիր նոցա. վասն որոյ յանկարծակի ի գիշերի միում դարձեալ դարձան ի տեղիս իւրեանց: Իսկ ապա քաղաքացիքն Շամախու սկսան ամրացուցանել զկողմանս քաղաքին ցանկովք խորադուռնիւք, և շրջապատ որմովք: Այլ և զօրք եւս հասին աստի և անտի, (այսինքն Գանձակու և Ղարաբաղու և Սղանու.) այլ հրամանաւ Շահին եկն նոր խան քաղաքին, որոյ անունն էր Հիւսէին խան Ապուլեցի: Իսկ զայն ամն պահեցին զքաղաքն մինչեւ ի գալ միւս ամին ի նոյն ժամանակն և ի նոյն ամսեան:

Դարձեալ եկին վերոյ յիշեալ լեզնականքն քան զառաջինն յոյժ ամբոխիւք, և պատերազմեցան ուժգնութեամբ զաւուրս

երկոտասան, և այս ամին զքաղաքն Մու-
շեղի ի ՌՃԾՆ Թուին Հայոց, օգոստոս ամ-
սոյ, ի ձեռըն Մուստաֆածանի փաշայոցն, յաւուր
չորեքշաբաթի։ Իսկ երկու այսպէս առնուլն-
քանզի որպէս յառաջն ասացաք՝ երկու կող-
մըն ունէր Մահմետականաց, այսինքն՝ Շի-
այք, և Սուննիք, և բնակիչք յայսմ քաղա-
քի ընդ կիսոյ էին, այլ և յոլովքն էին
Սուննիք, վասն որոյ ի Սարու-Թօքրաղ ան-
ուանեալ կողման բնակիչքն ի գիշերի բացին
զկողմն իւրեանց, և ի ներքս առին ի զօրացն
Թշնամեաց. և ընդ լուսանալ առաւօտուն
ինքեանք եւս խառնեցան ընդ նոսա և ե-
տուն ի ձեռս զքաղաքն։ Իսկ մնեալք ի ներ-
քըս Լազկացն՝ սուր ի գործ արկին ի վերայ
Ղզլպաշ Մահմետականացն. և զինչ աւարից
անկս աղետիցն և արեան հեղմանցն, որ եղ-
րեւ զգետ հոսէին ի մէջ շուկայիցն. և ութ
հարիւր այր ի գլխաւորաց քաղաքին և ի
մեծամեծացն փախուցեալք և մնեալ էին ի
ճամն իւրեանց, որ ի մէջ քաղաքին։ Իսկ
զնոսա առեալ իբրեւ զանասունս զենութին, մի-
անգամայն հատին և այրեցին զձայն փա-
յոցն։ Իսկ յոլովք ի զօրացն Պարսից և ի գլը-
խաւորաց նոցա փախստեայ գնացին յա և
կամեցան. այց նոքա, առնուլ և ընտանեօքն

մերկացուցին, որպէս այր մի անկեալ ի ձե-
ռըս անաստուած աւազակաց. և ժողովեալ
զամենայն կերպարակերպ ինչս, ոսկիս և ար-
ծաթս, բերեալ արտաքոյ քաղաքին կոտո-
րեցին ուրոյն ուրոյն, և բաժանեալ յին-
քեանս բարձեալ տարան ի տեղիս իւրեանց:
Այլ այնքան անգէտք էին պիղծքն այնոքիկ, զի
առնէին մի տումին հացի միոյ և սեխի միոյ:
Այլ այսպէս եղեւ աւերումն ամենափար-
թամ մայրաքաղաքին Շամախու:

Այլ զկնի աւերման քաղաքիս գլխաւորքն
Գանձայու և Երեւանու ազդ արարին և
բողոք բարձին առ արքայ, և ինքեանք գրոհ
տուեալ ամենայն զօրօք իւրեանց եկեալ
հասին ի Պարտաւ քաղաք Ուտիանից առ
ափն Կուր գետոյն: Խանն Երեւանու ա-
մենայն կողմնակալօք իւրովք, նոյնպէս և
խանն Գանձայու ամենայն մեծամեծօք իւ-
րովք, և այլք տասն բազմութիւն զօրաց
յոյժ իբրեւ երեսնից հազարաց: Բայց յար-
քայէ ոչ եղեւ և ոչ եհաս օգնութիւն նոցա,
քանզի յոյժ ի տարակուսի կայր և զբաղեալ
էր ի պատերազմաց կողմանցն Ղանդահա-
րու. միայն թէ բանիւ և թղթով հրամա-
յեաց նոցա առնել զոր ինչ և կարասցեն:
Իսկ ճողոպրեալ գաղթականքն այնոքիկ իբրու

թէ ընդելք որսորդք, քաջք և կիրթք ի չարիս իւրեանց, և անհարկադէմք, որ զա-նուն և զձայն նոցա միայն լսելով սարսէին և դողային մերձակայք նոցին. ըստ որում և այժմ նոքա եւս հանդարտ և անվրդով ա-ւանց աղաղակի ժողովեալ էին յայն կողմն գետոյն մեծի, և ի գիշերի միում լռութեամբ անցեալ էին յայս կոյս։ Իսկ թուլամորթ և կանացի ազգն Պարսից ըստ սովորութեան իւրեանց՝ որ ի գիշերի մինչեւ ցառաւօտ խնճոյիւք արբենան, և յառաւօտուն ընդ-խոր քնով անկանին։ Եւ ապա ընդ լու-սանալն և ընդ ծագել արեւուն յարեան ի պատերազմ. և մինչ սոքա դանդաղանօք պատրաստեցին զինքեանս, նոքա յաղթա-հարեալ արկին առաջի իւրեանց, և կոտո-րածս հասուցին մինչեւ ցլեռնատոյքն Ար-ցախու՝ առ Որդուանական գետովն և Խաչէ-նաձորով։ Եւ այսպէս կորագլուխ եղեալ Պարսիցն նանրացան ի խորհուրդս իւրեանց և Խազիրքն ժողովեալ զկապուտս նոցա, դարձան ի տեղիս իւրեանց խնդութեամբ։ Այս գործեցաւ ի ռՃՀ թուին, յաւուրս աշնան։

Եւ յանցանել ձմեռնային սաստկա-ւոյց գետոյն, և մերձենալ գարնանային քաղ-

ցրահոս չնչմանն որ մեզ դառն երեւեցաւ, յաւուրս մարտի ամսոյն, մերձ առ մեծի պասեքի Տեառն, դարձեալ վառեցան ի չար խորհուրդս խուրեանց, կրկին և եռապատիկ ժողովեցան գնդեցան և միացան իբրեւ զմարախ բիւրք բիւրուց և հազարք հազարաց. ելին ի Պուռն Արկաթի և հասին ի Շամախի. և անտի եկեալ բանակեցան ի տեղին ուր Արասխ և Կուր գետք խառնին ընդ միմեանս հանդէպ բերդին դաշտին Մուղանու: Եւ զօրագլուխ մի Պարսից զոր Չարխամի ասէին, և նա բանակեալ էր յոլով զօրօք ի յերկիրն Ղարկուշատայ՝ ի վերայ նոյն Արասխայ. նա ի լրոյ համբաւոյ սոցա ինքնահաւան եղեւ իբրեւ այր ամբարիշտ, և ի չէք դարձաւ ի տեղւոջէ իւրմէ: Իսկ Հոնքն քաջամարտիկք և արեանարբուք եկին զառ ի վեր գետոյն մինչեւ ի սահմանս Ղարկուշատայ ի յերկիրն Տիզակայ, և պատեցին զնա զլերամբք և զդաշտօք. և կարգ առին զօրէն ոձոյ և ինքեանք որպէս բազմահմուտ հրնձօղք անկան ի վերայ նոցա: Եւ զի լի էր երկիրն քրիստոնէիւք՝ այլ և Մահմետականօք յոլովիւք, և բաղխեցան ի վերայ նոցա յաւուր մեծի շաբաթուն, և զաւուրս երիս ունայն և թափուր կացուցին զամենայն

երկիրն այն ի մարդկանէ և յանասնոց՝ կո-
տորմամբ և գերութեամբ։ Եւ անտի ան-
ցին յերկիրն Վարանդու, զնոյն և անդ
գործեցին. բայց Մելիքն նոցա Պաղիր ա-
նուն փութով ընդ առաջ յղեաց նոցա
արս ոմանս յիւրմէ անտի ընծայիւք, և զկե-
ալն թափեաց զգերութիւն և զերկիր իւր։ Եւ
անտի եկեալ հասին յերկիրս Խաչենու՝ ա-
նուահ և համարձակ դիմօք, զի բնաւ ոչ ոք
ընդդէմ եկաց նոցա ոչ սրով և ոչ բռնու-
թեամբ. այլ առհասարակ զթիկունս ի-
րեանց փախստական դիմաց դարձուցին ի նոսա.
վասն որոյ և դիւրամուտ եղեն սոսա, և զոր
ինչ կամեցան՝ զայն գործեցին, զոր ոչ բա-
ւեմ ասել։

Բանակն ի միում աւուր ի Կարկառ գե-
տոյն մինչև ի Դրդուակն գետն և յեր-
կիրն Ջարաբերդու, միահաղոյն ասպատակ
սփռեցան ընդ լերինս և ընդ դաշտս։ Նախ՝
զփայտաշէն տունս և զյարկս գիւղօրէից
հրձիգ արարին, և ապա յարձակեցան ի վե-
րայ գերեաց, իջուցին ի գլխոց լերանց և
հանին ի ծակուց վիմաց, և ի ներքոյ անտա-
ռախիտ և մացառուտ մայրից։ Եւ ժողո-
վեալ ընդ նոսա զկահ և զկարասիս նոցա.
ընդ որոց խառնեցին և զհօտս, զջոկս, և ըզ-

Ջոկերս խաչանց և արջառոց և ամենայն չորքոտանի անասնոց, և միահաղոյն խառնեալ վարեցին զատ ի վայր ընդ գետն Խաչինու. զգերին և զանասունսն ընդ միմեանս խառնեալ էին իբրև զհեղեղ յորդ, և որպէս զբանակ մեծ ի գնալն իւրեանց. զոր և մեք աչօք իսկ նկատէաք. քանզի փախստեայ հասեալ էաք ի կատար լերինն որ ի վերոյ է օրբոց Սթուոյն Գանձասարայ. և սոք նոցա ոչ հասին առ մեզ։ Այլ մեք անտի հայեցեալ տեսանէաք զեղելոցն իրագործութիւնսն. և այս եղև ի ռձհա թուին, ապրիլ ամսոյ քսան, յաւուր աշխարհամատրան կիւրակէին։ Անտանոր տեսանելի է զաղէտ յետամնացելոց, զսուգ կոտորելոյն, և զաշխարս գերելոցն, զկսկիծ մարցն, և զաղէտ գերեալ զաւակացն, զողբումն որբ մնացելոցն, և զաւարառութիւն ընչիցն, զձայն լալականացն խառնեալ ընդ վայումն միջակտուր արանցն, սրդարև զբնութիւնս լերանց և կարծր վիմաց փոխեալ՝ ընդ ինքեանս սգակից ինքեանց առնէին։

Իսկ զօրք Թշնամեացն տարեալ զաւարն և զգերին խառնեցին ի բանակն իւրեանց. Եւ չուեալ ի Սկանակերտու բանակեցան ի վերայ գետոյն Դլրդու, զոր այժմ Թար-

Թառ կոչեմք ըստ պարսկականին, ի վերայ կամրջին որ Պառի—քօրփի ասեն ։ Եւ ոչ տեւեցին անդ. այլ և ոչ կարացին այնքան վնասել երկրին Չարաբերդու և Գարտա-յու՝ որպէս մերոյս ։ Քանզի նոքա յառա-ջազգած լեալ ի յամուր տեղիս լերանց իւ-րեանց ամրացեալք էին, մանաւանդ Թէ երիտասարդք ոմանք ընդդիմանային եւս, որ և զբազումս հարին ի Թշնամեացն. վասն որոյ զաւարն և զգերին ձեպով անցուցին ընդ գետն մեծ Կուր ի կողմանս իւրեանց, և ին-քեանք փուԹացան հասանել ի վերայ քա-ղաքին Գանձակու ։

Յայսմ՝ վայրի ի սոցանէ մոնդեալ և նեղեալ մեծ պարոնն Քալալալի—պեկ, տէրն Չարաբերդու և Դայնաղին, որ էր Թոռն Գարկահղուլի սուլտանին ։ Քանզի փախըս-տեայ ի յերկիրն Օարոյ էր, և անճարակ լեալ եկն առ սոսա ։ Եւ զկնի քանի ինչ աւուր զորդին իւր պատանդ տուեալ, և ինքն գաղտ դարձեալ եկն ի տեղի իւր ։ Իսկ նոքա գնացեալ նստան ի վերայ քաղաքին Գանջայու յաւուրս երկոտասան, աւելի կամ պակաս. և ոչինչ կարացին առնել, քանզի ի՛ներքուստ ընդդիմանային քաղաքացիքն, և մանաւանդ Թէ յառաջագոյն իրազեկ ե-

ղեալ վասն սոցին գալստեան մեծատունք և ձոխք քաղաքին, գնային ի քաղաքն Տփխեաց առ Թագաւորն Վրաց Վախտանկ, գալ յօգնութիւն իւրեանց. և նա խոստացեալ էր գալ։ Եւ յորժամ մօտ եղեն սուրհանդակք, և պատգամաւորք սոցա մի զմիոյ կնի ընթանային զկնի նորա. որ և եկին իսկ քառասուն հազարաւ ի վերայ Լազկայն։ Եւ յորժամ եհաս նա յերկիրն Շամքօռու, սոքա աստի սկսան սորել դէպ ի Կուր գետն. և այսպէս մի ըստ միոջէ գնալով ի մէջ երից աւուրց չիք եղեալ կորեան ի տեղւո իւրեանց, և բարձան ի միջոյ։ Իսկ Թագաւորն Վրաց Վախտանկ եկն յոլով ամբոխիւ աւելի եւս քան զքառասուն հազար, և բանակեցաւ ի հարաւոյ կողմանէ քաղաքին Գանձակու օգնութեամբն Քրիստոսի Աստուծոյ. որում փառք յաւիտեանս. ամէն։

## ԳԼՈՒԽ Զ.

### Վասն երկրորդ գալստեան Թագաւորին Վրաց Վախտանկին ի Գանջայ։

Եւ որպէս պատմեցաք զառաջին գալուստ Վախտանկին յօգնութիւն քաղաքին Գանձակու ի կողմանէ աւարառու-

թեան ազգի Աղկաց, որ և զնոսա փախըս-տական արար առանց պատերազմի. և ինքն ամենօրեայ աւուրբք նստաւ մերձ ի քաղաքն։ Իսկ քաղաքացիքն բանտաւոր եղեն առ նա, և ասեն. ոչ լինէր գալուստ Աղկացն առ մեզ և յերկիրս մեր, եթէ ոչ ի մերձակայից և ի շրջակայ ազգացս որ զմեօք են համակամ և միաբան չէին լեալ ընդ նոսա։ Քանզի ի սատարելոյ սոցա եկին նոքա, վասն զի միա-կրօնք և համազգէնք և Սուննիք են։ Արդ՝ ե-թէ դու մեծի Շահին բարեկամ և սիրելի ես, և մեզ կամեցող, պարտիս և դու զնոսա գերել աւարել և կողոպտել։ Եւ պատճառ մի սոցին այսպէս ասելոյն. զի վասն գալըս-տեան նորին յօգնութիւն ինքեանց, բազում և յոլով դրամս խոստացեալ էին նմա, և ի չըս-տալն իւրեանց զնոսա, մատնեցին զնա ի ձեռս նորա։ Եւ զի էր յաւուրս գարնան ի յամսեա-նըն մայիսի, ի ռճհա թուին, և առ հասարակ վրանաբնակ ազգքն՝ որ և Թարաքամայ կոչին, որ խաշնարածք եղեալ էին ի լերինս և ի հով-վանոցս և ի խոտաւէտ տեղիս ըստ նախնի սովորութեան իւրեանց, մանաւանդ թէ փա-խստեայ իսկ էին և նոքա ի յահէ Աղկուն, և այժմ ի թելադրութենէ Գանձեցւոց, ո-րոց գլխաւորն էր Ջաւատ անուն խանն, հը-

րամեան արար Վախտանգն զօրաց իւրոց երա-
նել ասպատակ ի վերայ այնոցիկ յորոց նոքա
առացին ։ Եւ իսկոյն գունդագունդ եկեալ
Անլեկան ազգն Վրաց տուեալ անողորմ
քան զկոմկասայինսն . սփռեցան ի լերինս և
ի ծործորս և յարձակ վայրս երկրի Ջակա-
մու , Շամքորոյ , Գանձակապատանու , Ասկա-
նապատու , Թուրրաքչայու , և Պարտայու .
մինչեւ ի Գաւլստան գեղն և ի գետն Դըր-
գու ։ Եւ թէպէտ սպանութիւն և գերե-
վարութիւն ոչ այնքան արարին , սակայն
զոր ինչ տեսին աչք նոցա , չորքոտանի անա-
սուն , մինչեւ ի հաւ և ցկատու և ցշուն .
իսկ զանշնչից ոչ է ասելի , զի մինչեւ զփայ-
տեղէն և զպղնձեղէն և զխեցեղէն տարան ։
Եւ եթէ այս այսպէս , և զի՞նչ գրեցից սա-
կրս պխտոյ և պատուական ընչից և գոյից ,
ոսկեղինաց և արծաթեղինաց , և այլ ազգի
ազ ի կահուց և կարասեաց . և զի ասելի՛
թէ ի բազմութենէ աւարին , այսինքն պղն-
ձոյն , երկաթին , և շորեղինին ոչ բաւէին
բեռնակիրք . այլ սայլիւքն որ ընդ ինքեանս
ածին կրէին ի բանակս իւրեանց , որ էր մերձ
Գանձակայ , ի Չօլոկ անուանեալ վայրն ։
Եւ զայս ոչ թէ միայն յառաջ ասացեալ
Մահմետականացն արարին . ոչ . այլ ընդ նո-

ո՛ն խառնեալ և զամենայն գաւառս Հայոց
ի վերոյ գրեալ յերկրէն միահաղոյն աւարի
առին զշարժուն և զանշարժուն։ Ուր զի լինէր
երբեմն գունդ ինչ զօրացն Պարսից. դիմէին
ի գեօղ ինչ քրիստոնէի, և նոքա քահանայ-
իւք և ժողովրդովք ընդ առաջ լինէին նոցա
խաչիւք, շուրջառօք, զանգակօք, և մոմեղինօք
իբրեւ զքրիստոնէի։ Իսկ Պարսիկքն ի վե-
րայ անկեալ կողոպտէին զզգեստսն, և զեկե-
ղեցին, զգիրք, և զամենայն անօթս. զայս և
զկանայս, և զամենայն ինչս գերէին մերկ ի
մօրէ կողոպտեալ և աւարի առեալ գնային.
և այսպէս զամենայն գաւառս և զեկեղեցիս
կողմանցն Գանձակու աւեր և թափուր ա-
րարին յամենայն ընչից, և լցին զբանակս իւ-
րեանց։ Ո՞չ զթիւ հօտից և անդէոց և ար-
ջառոց ո՞ կարէ ասել. քանզի կարգ և սովորու-
թիւն է նոցա յամենայն աւարէ զտասանոր-
դըն տալ գլխաւորին իւրեանց. այժմ առէին
զբաժին նորա ի յոչխարաց քսան և հինգ
հազար, և յարջառոց ինն հազար, և զայ-
լըն մտօք զննեցեւս։ Ուր զի այս եղեւ օ-
գուտ մեզ գալուստ նորին, որ զմիացեալն
ի ժպիրհ ազգէն Եզգեաց Ճռաքաղ արարին
ագահ և անյագ և անողորմ ազգն Պարսից։
Ուր գիտելի է, զի Թագաւորն Վախտանկ.

ինքն այր բարեսէր, երկիւղած յաստուծոյ, և քրիստոնէասէր և անյիշաչար էր, որ և յոլով անգամ պատուիրէր և սպառնայր զօրացն ոչ առնել այնպէս գ.քրիստոնեայսն՝ որպէս փասն սպանութեան և գերութեան. Իսկ նոքա ըստ բիրտ և սուր բարուցն Վը-րաց ոչ անսային, և ոչ լսէին հրամանի գըլ-խաւորին իւրեանց։ Եւ նոքա զայս արարեալ, և ապա դարձան ի տեղիս իւրեանց, և մնաց երկիրս մեր անտերունչ և անգլխաւոր, և սկսան մարդիկ իւրաքանչիւր զհաճոյս կամաց և մտաց իւրեանց առնել։ Աւաղ է իմ տեսեալ զայս և նկատեալ զի յաւուրս իմին ոչ գոյ նշան խաղաղութեան, որ և էի ի մէջ բանակին Վախտանկայ, ընդ նոսին և ես ուղղեցայ գնալ յերկիրն Վրաց. որ և գնացաք խակ. և յուղի անկեալ ի Գանձայու ի ռ.ձհա թուին, մայիսի ամսոյ ԻԸ, մտաք ի Տփխիս քաղաքն, մնալով անդ ամիսս չորս։ Եւ ի մտանել աշնան, յամսեանն սեպտեմ-բերի սկսաւ կրկին դառնալ ի Գանձայ Վախ-տանկ այսու պատճառաւ։

Քանզի ի նուազիլ միանգամայն և ի ըս-տորանկանիլ թագաւորութեանն Պարսից. զոր յառաջն տեսացուք զօրութիւն իւրն, առաւել եւս բարձրացան թշնամիք նորին

մանաւանդ կայսերքն մեծամեծք և ինքնա-
կալք Ռուսայն ասեմ՝ որ Մոսկովու, Պետ-
րոս Թագաւորն և Հոռոմոց Կոստանդնու-
պօլսեաց տիրող խոնդքեարին. որքա յիւրա-
քանչիւր դիմաց սկսան զօրս յարուցանել ի
վերայ երկրին Պարսից. զի Ռուսն օգնել
կամէր Թագաւորին Պարսից, իսկ Հոռոմա-
յեցին (օսմանցին) առնուլ ջանայր յինքն,
ասելով: Որովհետև այլք կամին առնել կող-
մանցն այնոցիկ, ինձ անկ է առնուլ. վասն
զի յառաջնմէ մեր էր երկիրն Ատրպատակա-
նի: Սակս այսր պատճառի սկսան յերկուց
կողմանց պատգամս յղել առ Թագաւորն
Վրաց Վախտանկ. մին ասելով՝ յիմ կողմն
լեր, և ինձ հնազանդեա. և միւսն թէ՝ հա-
ւատակից իմ ես, պարտիս ինձ անսալ և առ
իս գալ. քանզի պայման ուխտի և ժամա-
դիր եղեալ էր Թագաւորն Պետրոս առ
Վախտանկ, զի յայսմ աշնան ի միւսն հոկ-
տեմբերի՝ ինքնին ի քաղաքն Շամախի հա-
սեալ և զնա անդ ի պատրաստի գտանել
պարտ է: Յայսմ նուագում Թագաւորն
Պարսից, որ հանդերձեալ էր անկանիլ ի
գահոյից և ի բարձրութենէ իւրմէ, փու-
թանակի հրովարտակ մի հասոյց առ Վախ-
տանկ, եթէ «Բեգ եառ զամենայն իշխա-

նութիւն կողմանցդ Գանձայու, և ամենայն Ատրպատականի. և զքեզ կարգեցի գլուխ և սպարապետ ամենայն իշխեցողաց կողմանցդ այդոցիկ. վասն որոյ շեշտակի զօրս գումարեալ գայցես ի Գանձայ, և պահ կալեալ զգուշա-ցիս կողմանցդ այդոցիկ ի թշնամեաց մերոց: Զայս հրաման և ի նմանէ ընկալեալ Վախ-տանկըն, մտախոհ եղեալ ի սենեակ սրտի իւ-րոյ այսպէս, եթէ ահա ստիպիմ ի յերկուց ինքնակալաց, որ և հարկ է զհրաման միոյն կատարել: Արդ՝ հոռոմայեցին այլահաւատ և օտար գոլով ի մէնջ, կամի բռնութեամբ տիրել երկրի մերում: Իսկ կողմն այս, զի մին բուն տէրն մեր է, ամենքն Պարսից թագա-ւորն, և միւսն հաւատակից մեր և քրիստո-նեայ կայսր է, մանաւանդ թէ՝ հզօր զօրու-թեամբ: Արդ՝ դիմեալ գնացից ի հրամա-նըս նոցա, և յորոց ի նոցանէ յաջողեսցի ըղ-հրամայեալն՝ զայն կատարեցից:

Եւ իսկոյն հրաման եհան զօրս գումա-րել, և վաղվաղակի ժողովեալ զբազմութիւն զօրաց ազգացն Վրաց և Հայոց, և ոչ ոք եթող զոր ոչ եբարձ ընդ իւր, ընդ որոց և զիս էառ բերել. զի գնալն մեր անդ մին-չեւ ի դարձն այս սիրով ընդունէր զմեզ, և զռոճիկն մեր ի յինքենէ էր հրամայեալ: Եւ

Ելեալ ի Տփխիսու անբաւ ամբոխիւ, զորոյ ուրախութիւնն անբաւ գոլով՝ ոչ կարացաք գրել, և եկեալ հասաք ի կամուրջն կառուցած՝ զոր Ընդզօրիկ ասեն, յաւուր տօնի սրբոյ Խաչին։ Եւ ապա անդ յայսմ աւուր յառաջ կոչեցեալ զիս՝ հրամայեաց նախ քան զինքն յառաջ ընթանալ յերկիրն մեր Ղարաբաղ, և զհայազուն զօրսն՝ որ գումարեալ կային անդ ի ձեռն Մելիքներաց, և չորս գլխաւորք եղեալ երիտասարդացն, որոց անուանքն են Սւան, Շրուան, Շահնի, և Սարուխան, որ և սոքա հարիւրապետք և Խ–ըղըղաչի կոչէին։ Սոքա ընդ Մելիքներացն Ղարաբաղու. զկնի առաջին դառնալոյն Վախտանկին և լռախոսելոյ իշխանութեան Պարսից, միաբանեալ ընդ նոքեանս զամենայն քաջասիրտ և արիական և զօրեղ մանկունս և երիտասարդս տանս Ազուանից, ըստ նոքեանց կազմեալ էին զօրս բազումս աւելի քան զերկոտասան հազար, և ամրացեալք յամուր վայրսն Արցախու։ Եւ այսպէս բազում արիութիւնս ցուցեալ յերկրիս մերում. որոց պատմութիւնքն յառաջակայսդ յաճախագոյնս գտցես։

Այժմս լուեալ սմա զայցանէ՝ չեշտակի Ճեպով յղեաց զմեզ վասն առ նոքին ածելոյ

զնոսա կաղմ զօրօք ։ Եւ ըստ հրամանին եկեալ մեր յարդարեցաք զնոսա ըստ օրինի զօրաց իշխանաց , վասն զի անվարժք էին զինուորական սպասաւորութեանց . և այսպէս բովանդակեալ զամենայն , և իբրև սան հազար այս ընտիրս և սպառազէնս . ընդ որոց և զդասս քահանայից և պաշտօնէից մերոց առեալ մեծաւ ճոխութեամբ և խնճոյիւք , համարելով նոր նորոգեալ զիշխանութիւն Հայոց . և գնացեալ իջաք մերձ ի քաղաքն Գանջայ . Չօլակ անուն վայրն՝ յաւուրս երիս ։ Բանակն և Թագաւորն Վախտանկ բնակեալ էր յայն կողմ քաղաքին՝ ի վերայ ջրոյն որ Գօշղուկ գետ և Գարա—սրխ տանն . և զկնի երից աւուրց ապա հրաման արար գնալ առ ինքն ։ Որ և եկեալ գնացաք ։ Եւ ի մերձենալ բանակին նորին , ինքն ևս հրաման արար զօրաց իւրոց ընդ առաջ լինել մերայնոցն՝ իբրև ողջամբ ընդունելով զնոսա ։

Եւ այսպէս մեծաւ շքով ի հանդիպել միմեանց երկուց կողմանց զօրացն , և իբրև զօրէն պատերազմի ռազմ կարգեալ ճակատ առ ճակատ . և քաջամարտիկ մանկունք մերոցս դիմաց յառաջ խաղացեալ ճախր առեալ քաջընթաց երիվարօք , և զինակազմ

զնահէիւք պարէին յանդիման ճակատուն. և ի ձայնէ հրացանացն որոտայր և Թնդայր վայրն այն. և փոշեխառն ծուխ նորին, իբրեւ զկայծականափայլ ամպ արգել զճառագայթս արեգական, մինչ զի զմիմեանս հազիւ տեսանէաք: Եւ այսպիսի խռովութեամբ հասեալ իջաք մերձ առ բանակն նոցին: Զոր տեսեալ Վախտանկին այսպիսի յառաջադիմութիւն մերայնոցս, ցնծացաւ ի հոգի և ի մարմին իւր: Եւ նոյնժամայն յղեալ կոչեաց առ ինքն զմեզ, և զգլուխ կարգեալ տղայսն և զՄէլիքսն. և յորդորական բանիւ յուսադրեաց, և զօրացոյց ասելով. «Այսուհետեւ զօրացիք և քաջ լերուք իբրեւ յորդիս զօրութեան. և յուսացէք և յումեքէ մի երկնչիցիք, զի ահա հասեալ է ժամանակ փրկութեան քրիստոնէից»: Եւ դարձուցեալ զբանն առ մեզ, և յոյժ շնորհակալ եղեւ զմէնջ. և ի վաղիւն զամենեցուն զգլխաւորսն խիլայեաց. և այսպէս մնացաք առ նմա իբրեւ աւուրս քսան և հինգ:

Եւ պատճառ սորին այսպէս ունէր առնելոյն ընդ մեզ՝ այս է. առաջինն՝ զի բնական սէր ունէր ընդ ազգիս Հայոց. և ոչ այնքան հաւատայր ազգին իւրոյ Վրաց որք միշտ

նենգաւորք և խորամանկք են, վասն այն կամէր զայս զօրս՝ մանաւանդ ազգս Հայոց իւրն սեփհականեցուցանել որպէս Տփխիսեցիք ։ Եւ երկրորդ՝ զի յատկացեալ և ըստուգեալ էր զօգուտս մեծի կայսերն Ռուսաց Պետրոսի, և կամէր Հայ և Վրացի զօրօք ճոխս և շքեղ ընդ առաջ ելանել նմա ։ Բայց զկնի յոլով ակնկալութեան և աշխատաւորելոյ համբաւոյ գալստեան նորին, մեղք մեր յառաջընթաց եղեւ քան զնա. զի եկն եհաս ի Դուռն Երկաթի, այսինքն՝ ի Դարբանտ, և բնակիչք տեղւոյն ինքնակամ յօժարութեամբ ետուն զամուրն ի ձեռս նորա ։ Բայց ոչ գիտեմ զինչ պատահումն եղեւ. ոմանք ասացին զի ի հիւանդութենէ և յայլ պատահարաց մնասք յոլով եղեւ զօրուն, և կոտորումն ձիոց վասն անընդելութեան նոցա օդոյ եղանակի երկրին. այլ և նաւաբեկութիւն եւս լեալ զինուց, այսինքն ջորախանէից, (ձէպհանէ) և ռոճկաց զօրուն. և այլք այլ իմն պատճառս ասացին ։ Զինչ և իցէ, անտի եղեւ դարձ նորին, թողեալ զօրս յոլովս անդ՝ պայմանեալ ի գալ միւսոյ ամին դարձեալ դառնալ. և ինքն չոգաւ յերկիր իւր ։

Եւ զայս լուեալ Վախտանկ, սա եւս

ակաւ դառնալ ի տեղի իւր . զի ի սոյն նուագում համբաւ եւս եհաս ի դրունս Թագաւորին Պարսից . Թէ զքաղաքն Սպահան Շահն և զօրք իւր ի ներքս փակեցին . և մերձ են ի յանձնուլ : Այլ եւս զկնի իւր սուրհանդակս եւս հասին , եթէ ահա ի հին Թշնամեաց քոց կամին յառնել ի վերայ տան քաղաքիս քո , փութանակի պարտիս հասանել այսր : Յաղագս որոյ վաղվաղակի յարուցեալ դարձաւ ընդ կրունկն , և սուղ ինչ պատերազմեալ ընդ Պաղախու երկրին սակս առաջնոյ ինչ քինու իւրեանց , գնաց ի տեղի իւր ի քաղաքն Տփխիս : Իսկ մեք անյոյս մնացեալ առաջնոյ ասացեալ յուսոյն , դարձաք իւրաքանչիւր ի տեղիս մեր , և ամրացաք ի լերինս ուր և դժուարին էր :

Բայց սակս որպիսութեանց Վախտանկին դարձեալ կայ մեզ ասել սակաւ ինչ պատմութիւն . զի զկնի դառնալոյ նորա՝ տակաւին բռնաւորն Գանձակու և Կախեթու և Երեւանու և Փորչալուին , և Պաղախու ի տեղիս իւրեանց էին : Սոքա ամենեքին Թշնամիք եղեալ ընդ նմա , մանաւանդ ուրացեալն Մահմատղուլի խանն Կախեթու , որոյ յառաջն Կոստանդ ասէին , ի Թոռանց Թեմուրազին . և Օղուրլու անուն

խանն Գանձայու, որ ազգաւ և ի բնութ-
թշնամիք էին ընդ ազգին Վախտանկայ.
այժմ միաբանեալ առ հասարակ յապստամ-
բութիւն, գրեցին զՎախտանկայ առ նոր
անուանեալ շահն Թահմազ. քանզի մի ի
յորդւոյն շահ սուլտան Հիւսէինին Թահմա-
զայ անուն, փախուցին յԻսպահանու և բե-
րեալ ի Պաղուտին աշխարհին շահ։ Եւ սա գը-
րեցին վասն Վախտանկին, եթէ խորհեալ է
զապստամբութիւն ի քէն, միաբանեալ ընդ
ինքեան զազգն Հայոց և Վրաց, և դեսպա-
նըս արձակեալ առ Թագաւորն Ռուսաց՝ կը-
նքեալ տիրել աշխարհիս քո։ Արդ՝ զոր
ինչ հաճոյ է յաչս քո՝ հրամայեսցես առնել։
Իսկ նորաբուսիկ անխնահեմն այն գրեաց հը-
րովարտակ, եթէ զերկիրն Կախեթու, և
Քարթալոյ որ է Տփխիս, բոլոր թումանօք
Վրաց՝ եսու Ահմատղուլի խանին, և
զամենայն գլխաւորս և զզօրս Գանձայու.
Երեւանու, և զայլս և զնորոյ գրեալն ե-
տու օգնական նմա, ահա պահանջեմ ի ձէնջ
զՎախտանկն, և կամ զգլուխ նորին փող-
փողակի յղեսջիք առ իս։ Եւ ապա յամե-
նայն ի մանկ ժողովեալ զօրաց ի վերայ նո-
րա, և նոյն ինքն Ահմատղուլի խանն, ի գը-
չերի գաղտ եմուտ ի բերդն՝ ոչ գիտելով

Վախտանկին. և ընդ սուսերն յանկար-
ծակի ձգեաց Բօֆ ի վերայ առնն Վախտան-
կին և ասէ. « Հրաման է շահին, եւ առաք և
գնա »։ Իսկ նա հազիւ թէ զերծեալ էր ի
Պարսից. զոր յառաջնմէ երբեմնք կոչեցին
առ Բիւքեանս, և զամն . . ս ի խորին Պարս-
կաստանն յաքարս պահեցին. և դարձեալ ե-
տուն զապստամբութիւն զօրացն Պարսից
զամս երկուս. և ապա զիւր հայրենի իշ-
խանութիւնն առեալ հրամայեցին դառ-
նալ ի տեղի իւր։ Յետ այսորիկ եկեալ
Վախտանկն, և թէպէտ առ երեսս այլ իմն
կերպիւ կեայր, այլ բստ միայն խորհրդոյ
զղջումն սրտին յայտնի էր յաչս ամենեցուն.
վասն այնորիկ յոյժ ատելիք էին նմա Պար-
սիկք, և նոքա նմա թշնամիք. այժմն ի յօրի-
նել ի վերայ նորա պատերազմին, և նա ժո-
ղովեաց զզօրս իւր, մանաւանդ զքաղաքա-
ցիսն, զհայազունն քաջամարտիկ զօրականսն,
որք զհոգիս և զորդիս, զինչս և զանձինս
ձօնեալ էին ի վերայ նորա յօժար սրտիւ. և
սկիզբն առ ի պատերազմն յառաջներոր-
դէն դեկտեմբեր ամսոյ մինչեւ ի տօն սրբոյ
Զատկին. Վախտանկն վրացի և հայ զօ-
րօք, իսկ Ահամանտունեին պարսկօք։
Զինչ այլ գրեցից սակս աւերութեան

և դժուարուԹեան և սպանուԹեան երկրին այնմիկ, այլ զի առաջինն այն եղեւ աւարա- կրին որ. գզօրսն Պարսից յաղԹահարեցին կռ- տարմամբ և փախստական առնելով. և ըն- դդէմ նմին զՄահմետականին զաւս ի զօրացն միայն գնդեալ՝ հալածեալ էին մերձ ի հաստա- նել. և նա զերրաստանակ երիվարին ուղղեալ էր առ պետն Կուր ի ներքոյ քաղաքին Տփխիսու։ Եւ այնպէս երիվարն արկեալ զինքն ի գե- տըն, և ի լող անցեալ յայնկոյս՝ գնաց յեր- կիր իւր ի Կախէթ. բայց ոչ կարեցաւ և ոչ դադարեաց ի չարուԹենէ, զի որպէս զհուր վառեալ էր ի չար նախանձուն, և երկրորդ Յուդայ զգեցեալ էր զհայր իւր զատանայ։ Բանզի գնացեալ խակյն ընդ իւր միաբա- նեցոյց զազգն Լազկեաց և զամենայն կովկա- սային լեռնաբնակիչսն, զի անյուսացաւ ի կողմանցն Պարսից. և ընդ նոսա ուխտեաց այսպէս. "ԵԹէ սատարիցէք ինձ և օգնիցէք և. ձերով օգնականուԹեամբ և զօրուԹե- ամբ առնից զքաղաքն Տփխիս, ձեզ տաց որ ինչ գտանիցի ի նմա, ոսկի և արծաԹ, կերպա- սեղէնն, կտաւն, և բրդեղէնն, պղինձն, երկաԹն, և անասուն, միանգամայն և գե- րին զոր ի նմա գտանիցէք։ Եւ ի վերայ այ- սոր ամենայնի ըստ մարդաԹուի ձերոյ ա-

մենայն մարդոյ երիս թուման եւս յինէն առաց, միայն թէ մեծ նախանձու խմոյ զվր-րէժն առից»:

Զայս լուեալ ի նմանէ կիրթքն ի չարիս, և աշխարհակործան մոլեգին լեգէոնն սա-դայէլի, զի այսպիսի աւետիս ետ զօրաւո-րքն իւրեանց, և յոյժ զուարճացան ի սիր-տիս իւրեանց, և խոստացան կատարել զկա-միս նորա: Եւ փաղփաղակի ի մի վայր ժո-ղովեալ բազմութիւն յոյժ վայրենաբարոյ ազգացն լեռնական բարբարոսաց, հանդերձ գլխաւորօքն իւրեանց զոր Ալի սուլթան և Խալի աղէին, և այլք ոմանք: Եւ յերկիս բա-ժանեալ զզօրս վիճակաւ ելին ի վերայ ամե-նափարթամ քաղաքին Տփխիսու, որում ի բա-զում ժամանակաց ցանկային. և յանկարծ ինն եկեալ պաշարեցին զքաղաքն: Քանզի զօրք Վախտանկին ցրուեալք էին, և ինքն անհոգ կայր. և աւուրս ինչ դիմակայեալ և ետես զի յուստեքէ ոչ եհաս օգնութիւն, այլ և ոմանք ի գլխաւորացն Վրաց և մեծա-մեծաց յետս չոգան ի նմանէ, որ էր Պարա-ղալխանու Կէօրգի յերիսթաւն և Պավլանե-ցիք, և ի քաղաքէն ոմանք եւս: Զայս տեսեալ Վախտանկին՝ զի յամառելն ոչ օգուտ բերել ինքեան և ոչ քաղաքին, խորհի ել ար-

տաքս ի քաղաքէն յերկր իւր։ Այլ հրաման եւ գլխաւորաց քաղաքին ելանել ընդ առաջ նորա և յօժարութեամբ առնուլ ի ներքս զզօրն. զի թերեւս մի խափան աւերեսցեն զնոսա, և զի զերծցին ի գերութենէ և ի ստրկմանէ, վասն զի խնայեաց ի քաղաքն, քանզի ծննդեան հայրենիք իւր էր։ Այլ ինքն գնացեալ ի վեր ամրացաւ ի խորին Վրաստան, և անտի ստէպ ստէպ հը-րոշակս և դեսպանս առաքէր առ Թագաւորն Ռուսաց, զի զօրս հասուսցէ ինքեան ի Թիֆլիս, և ոչ ժամանեաց։

Իսկ Մահմատգուլին յորժամ եմուտ ի քաղաքն հանդերձ բազմութեամբ Լազկեացն, և իսկոյն սկսան որոնել զքաղաքն տանէ ի տուն, և դրանէ ի դուռն. այլ և զեկեղեցիսն ամենայն և զվերնատունս և զներքնատունս նոցա։ Այլ զի ի յոլով ժամանակաց և այր անդրդուելի էր ի Թշնամեաց, և ի աղաղակեալ ի պատերազմի ամենափարթամ և վայելուչ քաղաքն Տփխիս. և որպէս ամենեցուն է յայտնի, բազմաշխատ վաճառականք են այր տեղւոյն, և փափկասունք և գեղեցկատիպ կանայք. ուստերք և դստերք նոցա, և ըստ կենցաղոյ քաղաքավարութեան ամենայնք ի բազ-

մաց. ապարանիւք գեղապաճուճօք զարդա-
րեալ, կահիւք և կարասեօք ուռճացեալք. և
ըստ ժամանակի իշխանութեան Հայոց զա-
մենայն սպաս և անօթս տանց և սեղա-
նոց նոցա գոլով փոխանակ պղնձոյ՝ արծա-
թեղէնս և ոսկեղէնս էին կազմեալ. իսկ
պճնազարդից և զգեստուց զարդուց ակա-
նակուռ դիպակաց մարգարտաշարաց պայ-
ծառութիւն՝ դիւրեա որչափ որ մտօք քո բա-
ւեն: Այլ վասն եկեղեցեացն չքեղութեան
և պայծառութեան զինչ ասացից. զի յոյժ
չքեղացուցեալ էին ոսկեղինօք և արծա-
թեղինօք և դիպակօք. և ամենայն կահիւք
և կարասեօք և անօթեղէն սպասիւք: Այս
ամենայն գրեալքս ի ձեռն աւրին վայրենի և
անագորոյն և ագահութեան մասամբ ան-
յագ գազանաբարոյ և ազրկանման ազգին
այնորիկ. և կողոպտեալ թափեցին յինքեա-
նըս զբազմութիւն աւարին և զմանկանց և
կուսից, կանանց և աղջկանց՝ զոչաց զհա-
ճոյն առին ի գերութիւն. իսկ զխայտա-
ռակութեանց զչափ ո՞ կարէ պատմել, և զա-
ւարին զթիւն ո՞ կարէ ընդ գրով արկանել:
Բայց սպանութիւն և այլ աւելի գերեվա-
րութիւն ոչ այնքան արարին, վասն զի ոչ ե-
թող խանն. այլ նոքա և ոչ նմա լսէին, քան-

զի զխոստացեալ դրամն խնդրէին. վասն ո-րոյ ծանր հարկս էարկ ի վերայ քաղաքաց-ւոցն անչափ համարօք, իբրեւ քառասուն հազար թուման, եւ առեալ զայն՝ ետ նոցա, եւ արձակեաց գնալ ի տեղի իւրեանց։

## ՎԵՐՋ



